ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

# Մեր երգը

Մեր լեռան լանջին
Առվակների ձույլ արծաթն էր զնգում,
Կակաչների տաք կարմիրն էր շաղվել,
Հովիկն էր այնտեղ անուշ շնկշնկում:

Ու այդպես մանրիկ,
Ձենիկ առ ձենիկ, կարոտ առ կարոտ,
Մեր ինքնությունը՝ մեր երգն էր հյուսվում:

# Մեր գարունները

Հայոց աշխարհում
Ամեն գարնան հետ .հույսն է թրթռում,
Հույսը ուզո՛ւմ է— դառնո՛ւմ ձնծաղիկ,
Իսկ թերթիկները տանում է առուն:

Հայոց աշխարհում
Առուն խնդում է, առուն կատակում,
Հույսից է միայն գարուն ճառագում:

# Մեր հիշողությունը

Անձրևից հետո՝ մաքրագործում է:
Նախնական գույնն են առնում քար,
ծաղիկ:
Ու ինչ ասում եմ՝
Խոստում է դառնում, սրբադող երդում,
Պայծառ է այնպես, այնպես եզակի:

Անձրևից հետո լեռը պարզել է:
Հիշողությունը առել է լեզու,
Եվ ես իմ սերն եմ հղում առ լեռը:

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15։ ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58-08—33, 56—14—96, 56—43—38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 3 • 87



Հանձնված է տպագրության 05.1 87 թ.։ Ստորագրված է տպագրության 25. II. 87 թ.։ ՎՖ 02176։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակը՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 67032։ Պատվեր՝ 7։ Գինը՝ 15 կոպ.։

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։

Сдано в набор 05.01.87 г. Подписано к печати 25.02.87 г. Формат 70×100 1/16. ВФ 02176. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 67032. Заказ 7. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Նապիկի 1-ին էջը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Ա. ՍԱԼՈՄԱՏՈՎ

# Պահարանը փորձանք բերեց

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Պատկերացրեք այսպիսի մի տեսարան. երեք օր առաջ ճանապարհս կտրեց մի պահարան։ Զարմանալի է, չէ՞։ Ես եկա տուն և ամեն ինչ պատմեցի պապիս։ Երկար մտածելուց հետո նա քորեց գլուխն ու հեղինակավոր ասաց. «Այդպիսի նախանշան կա, թոռնիկս, եթե պահարանը կամ սնդուկը կտրում են ճանապարհդ, նշանակում է դու պետք է դառնաս անտրական նավատորմի բոցման»։

«Այդպես չի լինում»,— կասեք դուք։

Իսկ ինչո՞ւ։ Ինչո՞ւ պետք է վախենալ սև կատվից և ոչ թե շեկ շնից, կամ ի՞նչ կապ կա ընկած դանակի և հյուրի միջև։ Փորձենք պարզել։

Դուք բոլորդ սովորում եք դպրոցում, սովորում եք տարբեր ձևով։ Ձեր մեջ կան գերազանցիկներ և ծույլեր։ Զարմանալի չէ, որ ամենաանհավատները նրանք են, ովքեր վատ են սովորում։ Ամբողջ երեկո փողոցում թափառելուց հետո, Սաշան, դասերը չսովորած, հաջորդ օրը գնում է դպրոց։ Գնում է և վախենում, որ հանկարծ իրեն կկանչեն գրատախտակի մոտ։ Դրա համար Սաշան ունի մի քանի «փորձված» նախանշան։ Ամբողջ դասի ընթացքում, ձեռքը բռունցք արած, նստում է կամ չի նայում ուսուցչին, որ նա իրեն չնկատի։ Եվ ի՞նչ՝ օգնում է… եթե ուսուցիչը ինկապես չէր որոշել նրան դաս հարցնել։

Իսկ բարձր դասարաններում շրջանավարտները ինչեր ասես, որ չեն անում քննությունների ժամանակ։ Հագնում են այն զգեստը կամ կոստյումը, որով մի ուրիշ քննության ժամանակ արդեն լավ գնահատական են ստացել, քննությունից առաջ գլուխ չեն լվանում, քննական թեր-

թիկը վերցնում են միայն աջ ձեռքով, իսկ վզից կախում են ինչ-որ մանր զարդարանք, այսպես կոչված թալիսման: Արժե՞ այդ դեպքում պատրաստվել քննություններին: Ավելի հեշտ չէ՞ վզից կախել մի քանի հմայիլ, աջ ձեռքով տոմս քաշել, և խնդրեմ՝ հինգը գրպանում է: Բայց, բարեբախտաբար, ամեն ինչ այլ կերպ է լինում, և ոչ մի թալիսման չի կարող օգնել ծույլին՝ թաքցնելու տգիտությունը:

Սնահավատության արմատները հեռու են գնում. մի քանիսը՝ մինչև նախնադարյան մարդը, իսկ մյուսները՝ միջնադար: Բայց դրանց բոլորի հիմքում ընկած է վախը: Վախ՝ բնության անհայտ ուժերի, մահվան և երաշտի հանդեպ:

Ինչ-որ ժամանակ հին սլավոնները երկրպագում էին մահացած մարդկանց հոգիներին: Նրանք իրենց հարազատներին թաղում էին տան շեմին և կարծում էին, թե հոգիները կարող են վնասել և օգնել ապրողներին: Ահա թե ինչու ընդունված չէր խոսել շեմին կանգնած, չէ՞ որ կարելի էր վախեցնել հոգիներին, և այդ իսկ պատճառով նրանք կարող էին տանտիրոջը գժտեցնել հյուրի հետ: Վաղուց արդեն շատերը չեն հավատում հոգիների գոյությանը, իսկ շեմի առջև չբարևելու նախապաշարումը դեռ մնացել է:

Քչերին է հետաքրքրում, թե որտեղից են առաջացել այս կամ այն սնահավատությունները: Օրինակ, ձեզնից ոմանք թքում են ձախ ուսի վրայով, որպեսզի իրենցից հեռացնեն դժբախտությունը: Իսկ թե ինչպես է առաջացել այդ նախանշանը, գիտեն ոչ բոլորը: Հավատացյալները կարծում էին, որ մարդը ունի երկու հոգի՝ «պահապան-հրեշտակը» և «գայթակղիչ-սատանան»: «Պահապան-հրեշտակը» տեղավորվում էր աջ կողմում, իսկ «գայթակղիչ-սատանան»՝ ձախ: Ստացվում է, որ մարդը թքում է սատա-



ձայի վրա, որպեսզի նա չխանգարի իր ցանկությունների կատարմանը: Ձախ աչքը նույնպես «մոտ է սատանային»: Եթե այն խաղում է, կնշանակի արտասվելու ես: Հիշենք նաև ձախ ձեռքը, որով չի կարելի տոմս քաշել քննության ժամանակ: Այստեղ նույնպես «սատանան» կարող է խառնաշփոթություն առաջացնել:

Եթե խոսք բացվեց համայիլներից, եկեք խոսենք դրանց մասին նույնպես: Թե ինչ է «աչքի ուլունքը», գիտեն բոլորը: Դա քար է՝ մի փոքրիկ անցքով: Սև ծովի լողափերին ես շատ եմ տեսել մարդկանց, որոնք վզներին կրում էին այդպիսի քարեր: Երեխա ժամանակ ես ինքս էլ էի կրում խեցգետնի չանչեր՝ հաստ թելի վրա: Այն ինձ նվիրել էր մի տարեց մարդ: Նա ասաց, որ այդ թալիսմանը կփրկի ինձ ծովում խեղդվելուց: Իսկ ավելի ուշ ես իմացա, որ շատ մարդիկ կրում են թալիսմաններ և համայիլներ: Ձեզնից շատերը տեսած կլինեն այն յոթ մարմարե փղիկները, որոնք պահպանում են ընտանեկան անդորրը:

Թալիսմաններին և համայիլներին հավատալը ծագում է նախապաշարումից: Բնության ուժերի դեմ անզոր մարդիկ որոշ առարկաների վերագրել են հրաշագործ հատկանիշներ՝ պաշտպանել չար ոգիներից, հիվանդություններից, հաջողություն բերել: Օրինակ, հնադարյան որսորդը գտնում է մի քար, որը ինչ-որ կենդանի էր հիշեցնում: Նա այդ քարը, որն իրեն շատ էր դուր եկել, տանում է որսի: Որսը հաջող էր, և այդ հաջողությունը նա վերագրել է քարին: Այդպես քարը դարձել է թալիսման:

Թանկարժեք և կիսաթանկարժեք քարերին նույնպես վերագրում էին գերբնական ուժեր: Միջին դարերում կարծում էին, թե թանկարժեք քարերը շնչում են և կարող են հիվանդանալ: Նույնիսկ գտնում էին, որ քարերը կարող են զայրանալ և վիրավորվել, և այդ էր պատճառը, որ դրանք կորցնում էին իրենց գույնը և հարթությունը:

Կան և տարօրինակ նախանշաններ: Օրինակ, եթե տրորես ուրիշի հետքը, ապա ոտքերդ կցավեն: Այդ դեպքում մենք բոլորս առանց ոտքի կմնայինք, հատկապես՝ քաղաքացիները: Պատկերացնու՞մ եք, թե քանի՞ անգամ ենք մենք տրորում ուրիշի հետքերը դպրոցում, աշխատանքի վայրում, տրանսպորտում և պարզապես փողոցում:

Շատ տներում դեռ կարելի է լսել այսպիսի խոսքեր՝ եթե գդալ է ընկնում հատակին, ապա կին է հյուր գալու, իսկ եթե դանակ՝ տղամարդ: Ստացվում է այնպես, որ եթե ցանկանում ես հյուրեր ունենալ, ապա հատակին թափիր բոլոր դանակներն ու պատառաքաղները, և ահա խնդրեմ՝ տունը լիքը հյուրեր:

Շատ երեխաներ և մեծահասակներ կարծում են, որ նախապաշարումների մեջ ոչ մի սարսափելի բան չկա: Դեռ ֆրանսիացի մեծ գրող Էմիլ Զոլյան է ասել. «Սնոտիապաշտությունը վտանգավոր է, չպետք է թույլ տալ, որ այն գոյատևի, այլապես մենք կհաշտվենք տգիտության և միջնադարյան խավարի հետ: Նախապաշարումը թուլացնում է, հիմարացնում...»:

Ոչ բոլոր սնահավատությունններն են անվնաս: Մինչև վերջերս որոշ ժողովուրդների մոտ գոյություն ունեին «արյունարբու» նախապաշարումներ: Կային այնպիսի ցեղեր, որոնք օգտագործում էին «արդարադատության բակլաներ»: Այդ թունավոր բակլաների միջոցով գտնում էին հանցագործին: Բնակչությունը սրբորեն հավատում էր «բույս-դատավորի» ուժին:

Վախեցած հանցագործը աշխատում էր որքան կարելի է քիչ ուտել այդ բակլաներից և մահանում էր հենց այն պատճառով, որ փոքր դոզան էր սպանում, մինչդեռ շատ ուտելուց պարզապես միայն սրտախառնուք էր առաջանում: Բայց միշտ չէ, որ հանցագործին գտնելը բարեհաջող էր ավարտվում՝ թունավորվում էին և անմեղ մարդիկ:

Իսկ ինչո՞ւ պայքարել երջանկության համար: Ավտոբուսում կամ տրամվայում երջանիկ տոմս կտրիր՝ և երջանիկ եղիր: Հիմարությո՛ւն:

Նախանշանները խանգարում են մեզ աշխատել, սովորել և ապրել լի, հետաքրքիր կյանքով: Դրանք կոտրում են մարդու հավատը հենց իր նկատմամբ և մեզ հեռացնում իրական կյանքից:

Հիմա մեզ ինչքան տարօրինակ կարող է թվալ, որ եթե աղը թափես՝ վեճ կլինի: Ինչ-որ ժամանակ դա իսկապես այդպես էր: Երեք հարյուր տարի առաջ մեկ փութ աղը արժեր այնքան, որքան մեկ տունը: Եվ եթե ինչ-որ մեկը թափում էր թանկարժեք աղը, նրա վրա բարկանում էին: Բայց հիմա աղ կարելի է գնել ամեն խանութում, և այն մի քանի կոպեկ արժե:

Բավականին շատ են և այն նախա-

նշանները, որոնք դադարել են նախանշան համարվելուց: Օրինակ, մարդուն առողջություն ցանկանալը, եթե նա փռշտում է: Նախնադարյան մարդիկ հավատում էին, որ փռշտալու ժամանակ չար ոգին անցնում է մարդու ներսը, այդ պատճառով մարդուն հարկավոր էր անպայման առողջություն մաղթել: Մեզ մոտ այդ սովորույթը դարձել է քաղաքավարության նշան:

Կամ, օրինակ, ապրիլի մեկին խաբելը: Ուրախ սովորույթ է՝ եթե կատակը լավ է ստացվում, բայց այն, ինչպես բոլոր նախապաշարումները, սկիզբ է առնում նախնադարյան տգիտությունից: Ինչ-որ ժամանակ գարունը դիմավորելու տոնակատարություններին մարդիկ թաղում էին չար ոգու՝ ձմռան խրտվիլակը: Իսկ որպեսզի չար ոգին չիմանար, թե ով է մեղավոր իր մահվան համար, մարդիկ հագնում էին դիմակներ, խաբում նրան: Այդպես էլ մինչև հիմա խաբում են: Միայն հիմա ոչ թե չար ոգուն, այլ՝ միմյանց:

Բայց համենայն դեպս կան օգտակար նախանշաններ: Մարդը հավաքել է դրանք, դարեր շարունակ հետևելով բնության օրենքներին:

Դուք բոլորդ գիտեք ինչպես կարելի է որոշել եղանակի փոփոխությունը ծիծեռնակի թռիչքով: Իսկ դիտողունակ մարդիկ կարող են գուշակել եղանակը նաև՝ ելնելով բույսերի վարքից: Օրինակ, անձրևից առաջ խատուտիկը սեղմում է իր աղվամազե գնդակը, նարգիզները փակվում են, մանուշակը թեքում է իր ցողունիկը: Դաշտային պատատուկի ծաղիկները անձրևից առաջ ամուր փակվում են, իսկ ուխտափշի կոները, ընդհակառակը, ուղղում են իրենց կեռիկները: Եթե առավոտյան խոտը չոր է, նշանակում է գիշերը անձրև կգա: Շատ բույսեր վատ եղանակից առաջ սկսում են ավելի շատ նեկտար արտադրել, ավելի ուժեղ են բուրում, ինչպես, օրինակ՝ դեղին ակացիայի ծաղիկները:

Բայց միշտ, նույնիսկ օգտակար նախանշաններին հարկավոր է մոտենալ քննադատորեն և գտնել դրանց գիտական բացատրությունը:

Ապագայում դուք կդառնաք բանվորներ և գիտնականներ, կոնստրուկտորներ և տիեզերագնացներ, իսկ ես՝ գուցե գրող:

Թո՛ւ-թո՛ւ, աչքով չտամ:

Թարգմանությունը՝ Շ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ





# ԿԱՄ-ԿԱՄՆ ՈՒ ԵՎ-Ը

ՎԱՐՈՒԺԱՆ
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Նկարը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

— Կամ ես, կամ դու,— ասաց մեծ եղբայրը:

— Եվ ես, և դու,— ասաց փոքրը:

— Կամ ամեն ինչ, կամ ոչինչ,—պնդեց մեծը:

— Եվ քիչ, և շատ,— վրա բերեց փոքրը:

— Կամ հիմա, կամ երբեք,— շարունակեց մեծը:

— Եվ հիմա, և հետո,— առարկեց փոքրը:

Երկու եղբայրներն իրար հետ վիճում էին: Մեծը համարում էր, որ միայն ինքն է խելոք ու ճիշտ: Փոքրը գտնում էր, որ ինքը նույնպես կարող է լինել ճիշտ ու խելոք: Վիճեցին, վիճեցին, հետո երկուսով գնացին Այո-ոչ թագավորի մոտ՝ նրա վճիռն իմանալու:

Այո-ոչը լսեց երկու կողմերին, ապա դիմեց իր խորհրդատու իմաստուններին ու նրանց հրամայեց.

— Հիմա որոշեք, թե երկու եղբայրներից որն է իրավացի.

Թագավորի խորհրդատու իմաստուններն էին Որովհետևը, Թերևսը, և Երբեմնը:

Առաջինը խոսեց Որովհետևը: Նա ասաց.

— Կամ-կամն ուժեղ կամք ունի, բայց քանի որ նաև կամակոր է, ուստի ճշմարտությունը գտնելու նրա կամքը բոցասական արդյունք է տալիս: Եվ-ը ելնէջում է: Նրա միտքը հեղհեղուկ է, բայց և ճկուն:

Երկրորդը խոսեց Թերևսը: Նա ասաց.

— Ինչ մեղքս թաքցնեմ. Եվ-ին ես համակրում եմ: Նրա ասածներն ավելի մոտ են իմ սրտին: Բայց գուցե ես պետք է ունկնդրեմ միայն բանականության ձայնին: Ինչևիցե, ինձ թվում է, որ Կամ-կամն իրավացի է այն դեպքում, երբ Եվ-ն

այնքան էլ իրավացի չէ: Եվ ընդհակառակը: Հավանական եմ համարում, որ մի երրորդ եղբոր պակասն է զգացվում, որը կոչվելիս լինի Եվ-կամ:

Երրորդը խոսեց Երբեմնը: Նա ասաց.

— Նայած ինչը՝ ինչպես, որտեղ և երբ՝ Կամ-կամը օգտակար է լինում նախադասությանը: Եվ-ևը նույնպես վնասակար լինելու մտադրություն չունի:

Եվ-ևը տարակուսած նայեց Կամ-կամի երեսին: Կամ-կամն անտարակույս նայեց Եվ-ևի կոշիկներին, որի մի հատը սև էր, մյուսը՝ դարչնագույն:

Այո-ոչ թագավորը քորեց գլուխը և իր իմաստուններին հրամայեց երկրորդ անգամ.

— Որոշեցեք:

Որովհետևն ասաց.

— Գոյականների գործը հեշտ է: Նրանք որոշակի լինեն, թե անորոշ, երկու դեպքում էլ էությունը շոշափելու հնարավորություն են տալիս:

Թերևսն ասաց.

— Ածականներն էլ շոշափելի են, թեև ածական կա, որ ձու է ածում, ածական էլ կա, որ թառ է ածում:

Երբեմնը ասաց.

— Բայը հո մեզ նման չի՞: Լեզվին զոռ տալու սովորություն չունի. գործում է կամ լինում է, և մենք դուռ ամենայնի գնահատում ենք նրան և չենք շփոթվում ժամանակի և տարածության մեջ, ինչպիսին էլ լինի եղանակը:

Այս անգամ Եվ-ևը քորեց գլուխը, Կամ-կամը հորանջեց: Այո-ոչ թագավորը զայրացած ասաց.

— Որոշեցեք, թե չէ ձեր գլխատառն օդ կթողնեմ:

Որովհետևը վճռականորեն հայտարարեց.

— Ես Կամ-կամի կողմնակիցն եմ, քանի որ նախ... հետո... ապա... ու... վերջապես... Հասկանալի՞ է:

Թերևսը կակազելով ասաց.

— Ես Եվ-ևին եմ կողմնակից, թեև... գուցե... անշուշտ... Հավանաբար, իմ վրճիռն այնքան էլ հասկանալի չլինի:

Երբեմնը համարձակորեն գոչեց.

— Այսօր Կամ-կամն է իրավացի, վաղը՝ Եվ-ևը, մյուս օր... Դե, հասկանալի է՝ էն մեկել օրը ով ողջ, ով մեռած:

Կամ-կամն ու Եվ-ևը չգոհացան պատասխաններից: Այո-ոչ թագավորը որոշակիորեն դժգոհ մնաց, բայց ոչ այնքան, որ թողնի իր խորհրդատուների գլխատառերը: Այնուամենայնիվ նա վճիռ արձակեց.

— Երեք ամսով ձեզ զրկում եմ գրելու թղթից և վեց ամսով ձեր անուններն մեծատառով գրելու իրավունքից: Տվեք ինձ բանալիները, ես բացեմ գանձարկղը և Քերականության դասագրքից իմանամ, թե ով է ավելի արդար՝ Կամ-կա՞մը, թե՞ Եվ-ևը:

Այն գանձարկղը, որի մեջ պահպանվում էր Արդարության քերականությունը, ուներ երեք կողպեք, որոնց տարբեր բանալիները գտնվում էին երեք իմաստունների մոտ: Այդ գանձարկղը հնարավոր էր բացել միայն այն դեպքում, երբ երեք իմաստունները միասին էին: Ո՛չ երկուսով, ո՛չ էլ առանձին-առանձին՝ նրանք չէին կարող հաղորդակից լինել իմաստության գանձարանին:

Այո-ոչ թագավորը սեփական ձեռքով երեք բանալիներն անցկացրեց համապատասխան կողպեքների մեջ, ճռռացնելով բացեց գանձարկղի դռնակը, և օ՜... զարմանք. Քերականության դասագիրքը չկար, անհետացել էր: Այո-ոչ թագավորի տառերը զայրույթից ճրճտացին: Կամ-կամն ու Եվ-ևը վախվորեցին: Իմաստունները իրար աչքերի մեջ նայեցին պարզելու համար, թե իրենցից ով է ավազակ, խաբեբա, բայց ոչինչ չկարողացան բացահայտել:

Ու թագավորն ասաց.

— Ասա ձեզ տեսնեմ: Կռահեցեք՝ այդ ո՞ր գոյականն է, որը հատուկ հետաքրքրություն է ցուցաբերել Արդարության քերականության նկատմամբ:

Որովհետևը խորհեց և ասաց.

— Խաչբառ լուծելն ավելի հեշտ է: Բայց և այնպես, քանի որ գանձարկղը ոչ մի տեղից ջարդված չէ, ուրեմն, բանալիներ է ձեռք բերել նա, ով այն բացել է:

Թերևսը, որը խորհել էր Որովհետևի խոսելու ժամանակ, անհապաղ ասաց.

— Գանձարկղը բացողը առնչություն ունի բանալիների հետ: Գուցե նրա անունը հենց «բան» վանկով է սկսվում:

Ու Երբեմնը թվարկեց.

— Բանաստեղծ, Բանվոր, Բանահավաք, Բանասեր, Բանավեճ, Բանարկու, Բանիմաց, Բանավոր...

Որովհետևն առարկեց.

— Բանարկուն, Բանիմացը, Բանավորը ածականներ են:

Թերևսը ընկատել տվեց.

— Վերջին հաշվով նրանք էլ խոսքի մաս են: Նրանց կասկածելը վնաս չունի:

Այո-ոչ թագավորը հրաման արձակեց.

— Բերման ենթարկեցեք Բանաստեղծին, Բանվորին, Բանահավաքին, Բանասերին, Բանսարկուին, Բանիմացին, Բանավորին և բոլոր ոչ անբաններին, որոնք հաշվի են առնված ստուգաբանական բառարանում:

Ինկական և անիսկական կապերը, կապական բառերը անմիջապես գործի անցան և շուտափույթ պալատ բերեցին ոչ անբաններին և նրանց շարքի կանգնեցրին Այո-ոչ թագավորի գահի առաջ:

— Ծնկի,— հրամայեց թագավորը:

Բոլոր ոչ անբանները իրենց ոտքերը տողադարձ արեցին:

Եվ թագավորը նորից խոսեց.

— Ով որ բացել է Արդարության քերականության գանձարկղը, թող խոստովանի:

— Մի բաժակ ջուր կարելի՞ է,— համարձակվեց տնքալ Բանավեճը,— բերանս չորացել է:

— Ջուր... ջուր...,— արձագանքեցին տողադարձաբար ծնկաչոք մյուս բանբանները:

Ինկական և անիսկական կապերը մընացին տեղում: Կապական բառերը վազեցին գրադարան՝ մի քանի հաստափոր վեպ բերելու: Այդպես եղավ, որ գրադարանում նս տարածվեց Քերականության դասագրքի անհայտանալու լուրը: Մյուս դասագրքերն իրար անցան և կապական բառերի ետևից, ինքնակամ շտապեցին պալատ և նույնպես ինքնակամ տողադարձվեցին թագավորի առաջ:

Մինչ ծարավ բանբանները հագեցնում էին իրենց ծարավը՝

— Ես կփոխարինեմ Քերականության դասագրքին, ով Այո-ոչ թագավոր, իմաստագույնը բչախոսների մեջ և բչախոսն իմաստունների մեջ,— խնդրանք մատուցեց Պարի դասագիրքը:

— Թող ես փոխարինեմ,— երգեց Երգի դասագիրքը,— այս Պարագիրքը իմ եղանակի տակ է պարում:

— Ես թող լինեմ Քերականությանը փոխարինողը,— ինքն իրեն առաջարկեց հանգերի բառարանը՝ բանաստեղծների դասագիրքը,— ես որ չտամ հանգավորված խոսքերը, երգը որտեղի՞ց կառաջանա:

Եվ այդպես, դասագրքերն ու մասնագիտացած բառարանները, մեկը մյուսի առաջն ընկնելով, իրենց թեկնածությունն էին առաջարկում Արդարության Քերականությանը փոխարինելու համար:

Այո-ոչ թագավորը վերջապես ասաց.

— Շնորհակալություն, որ ուզում եք ինքներդ ձեզ զոհաբերել հանուն Արդարության՝ դառնալով արդարադատության միջնորդ: Բայց ես իմ նախնական Քերականությունն եմ ուզում: Ո՞վ է նրան առևանգել: Որտե՞ղ է իմ Քերականությունը,— և հառաչեց,— ո՞ղջ է նա արդյոք:

Կամն ու Եվ-ը, Որովհետևը, Թերևսը, Երբեմնը, բանբանները, Ինկական կապերը, Անիսկական կապերը, Կապական բառերը, բառարանները, բոլորը, բոլորը հինգուր-հինգուր լաց եղան: Այդ համատարած լացի միջից հնչեց Բանավեճի սուր ձայնը.

— Մեղա քեզ, ով Այո-ոչ թագավոր: Այդ ես եմ նրան առևանգել: Նա ողջ է, և թող քո այո-ն իմ հանդեպ ողորմած լինի՝ ինձ չվերացնելով բառարաններից:

— Խոստովանիր լրիվ, պարզ ընդարձակ, բարդ ստորադասական, բարդ համադասական և բարդ համաստորադասական նախադասություններով,— հրամայեց թագավորը:

Եվ Բանավեճը պատմեց, որ տառակերուխումի ժամանակ, երբ Որովհետևը, Թերևսը և Երբեմնը հարբած էին, ինքը նրանց տառերի արանքից հանեց բանալիները, հացի խմորի վրա դուրս բերեց դրանց գծագրերը, բանալիները նորից դրեց ամեն մեկինը տիրոջ գրպանը: Հետո տանը նա գաղտնի պատրաստեց նույնանման բանալիներ, գիշերով սողոսկեց պալատ, բացեց գանձարկղը և տարավ Քերականության դասագիրքը՝ բարի նպատակով նրա մեջ խորամուխ լինելու համար: Հետո վախեցավ իր հանդուգն արարքից և պատժից խուսափելու համար, գիշերով Քերականության դասագիրքը տարավ խառնեց արքայական գրապահոցի գրքերին: Բայց տխուր փաստն այն է, որ ինքը չի հիշում, թե այդ ո՞ր հարկում էր, ո՞ր սենյակում, ո՞ր դարակի վրա:

Այո-ոչ թագավորի զայրույթը չանցավ նույնիսկ Բանավեճի խոստովանությունից հետո: Բայց Բանավեճի համար խնդրեցին Որովհետևը, Թերևսը, Երբեմնը, Կամ-կամը, Եվ-ը, բոլոր դասագրքերը, բացի կապերից ու կապական բառերից: Խնդրողները, խոստովանում էին, որ իրենց

համար էլ հետաքրքիր էր այդ դասագիրքը, և բացառված չէր, որ իրենք կատարեին Բանավեճի հանցանքը:
Թագավորը ներեց մեղավորին: Բայց ինչպե՞ս գտնել Քերականության դասագիրքը այն միլիոնավոր գրքերի միջից, որոնք գտնվում են արքայական գրապահոցում:
Կամ-կամն առաջ եկավ և ասաց.
— Կա՛մ կգտնեմ Քերականության դասագիրքը, կա՛մ ընդմիշտ դուրս կգամ բոլոր տեսակի գրքերից ու բառարաններից:
Եվ-ևն ասաց.
— Եթե ես գտնեմ Քերականության դասագիրքը, Կամ-կամին կխնդրեմ, որ մնա գրքերի մեջ, որովհետև ինձ թվում է, որ նա երբեմն պետք է գալիս:
(Որովհետևը և Երբեմնը իրենք իրենց մեջ ուտեցին, որ Եվ-ևն իրենց հիշատակեց):
Թագավորը Կամ-կամի ու Եվ-ևի վրա դրեց Քերականության դասագիրքը որոնելու և գտնելու պարտականությունը: Այդ նպատակով նրանք սկսեցին թերթել ու կարդալ գրապահոցի բոլոր գրքերը: Հոգնում էին ու տանջվում, բայց առավոտ-իրիկուն գրքերից չէին պոկվում: Թագավորը նրանց օգնության ուղարկեց իր իմաստուն խորհրդատուներին՝ Որովհետևին, Թերևսին և Երբեմնին: Նրանց համատեղ ջանքերն ապարդյուն չանցան: Հայտնաբերվեց Քերականության դասագիրքը:
Ու որպեսզի պատահաբար չկորչի այդ միակ օրինակը, Այո-ոչ թագավորը կարգադրեց, որ Քերականության դասագիրքը հրատարակեն միլիոն-միլիոն տպաքանակով: Հետո նա ասաց.
— Քերականության դասագիրքը հիմա ձեր տրամադրության տակ է: Դե, ձեզ տեսնեմ, ով ժողովուրդ: Կարդացեք, ուսումնասիրեք և ինձ խորհուրդ տվեք, թե ո՞վ է վերջապես իրավացի՝ Կամ-կա՞մը, թե՞ Եվ-ևը:
Կարդացին, ուսումնասիրեցին:
Ամեն մեկն իրենն էր փնտրում, ամեն մեկն իրենն էր տեսնում. գոյականները կարդում էին միայն գոյականներ, ածականները՝ միայն ածականներ, բայերը՝ միայն բայեր: Դեռ ավելին՝ «Ձայն» բառը կարդում էին միայն ձայնավորները, «Բաղեղ» բառը՝ միայն բաղաձայները: Ամեն մեկը մտահոգվում էր միայն այն բանով, թե ինչ տեղ, դեր ու պաշտոն պիտի ըզբաղեցնի նախադասությունների մեջ:
Արքայի խորհրդատուները՝ Որովհետևը, Երբեմնը և Թերևսը, որոնք վաղուց է, ինչ զբաղեցրել էին իրենց տեղն ու պաշտոնը պալատում և կատարում էին իրենց դերը, ի տարբերություն մնացյալների, ավելի լրջորեն ուսումնասիրեցին Քերականության դասագիրքը: Որովհետևը այն կարդաց վերջից մինչև սկիզբը, Թերևսը՝ կեսից մինչև վերջը, Երբեմնը՝ կեսից մինչև սկիզբը: Տառ-տառ ուսումնասիրեցին, ոգին ոգեկոչեցին, իրար հետ խորհրդակցեցին և եկան այն եռակի եզրակացության, որ դասագիրքն անկատար է, և անհրաժեշտ է, որ միասնաբար գրեն լրացուցիչ քերականության դասագիրք: Աշխատակցեցին, գրեցին, ավարտեցին: Հետո ներկայացան Այո-ոչ թագավորին, ու Որովհետևը այսպես խոսեց իրենց երեքի անունից.
— Թագավորի այո-ն էլ ապրած կենա, ոչ-ն էլ հետը: Երկու եղբայրներն էլ և իրավացի են, և անիրավացի:
— Զհասկացա,— ասաց Այո-ոչ թագավորը:
— Խնդիրն այն է, թե ուրիշ ինչ խոսքի մասեր են կպչում Կամ-կամի ու Եվ-ևի պոչից,— բացատրեց Թերևսը:
— Անորոշ է,— գլխատառը թափ տըվեց Այո-ոչ թագավորը:
— Արդարացի է բոլորովին մեկ ուրիշը,— ճշտեց Երբեմնը,— դա «Այսպես թե այնպես»-ն է, երկու եղբայրների մորաքրոջ տղան:
— Էհ, նա ի՞նչ է ասում,— հետաքըրքըրվեց Այո-ոչ թագավորը:
Եվ երեքը միաձայն պատասխանեցին.
— «Այսպես թե այնպես»-ը ճիշտն ու վերջնականն է ասում, երբ գործողությունն արդեն անցյալ կատարյալ է լինում: Եվ միայն այդ դեպքում է, որ նա ամեն մի խոսքի արժանացնում է այն, ինչին նա արժանի է:
— Լսեցի՞ք,— ասաց թագավորը Կամ-կամ ու Եվ-և եղբայրներին, որոնց հրավիրել էր պալատական խորհրդատուների խորհրդակցությանը:
Եղբայրները հասկացան, որ ներկա և ապառնի ժամանակները պետք է մեծանան, ծերանան, դառնան անցյալ կատարյալ և նույնիսկ անցյալ վաղակատար ու անցյալ հարակատար, որպեսզի իրենց մորաքրոջ տղան՝ «Այսպես թե այնպես»-ը վճիռ արձակի, թե ով է իրավացին՝ Կամ-կա՞մը, թե՞ Եվ-ևը:

ՀՐԱՆՏ ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

# Մի զվարթ աղջնակի

Դու այնպես սրտառուչ երգիր,
այնպես պարզ, այնպես իրական,
որ հուզվեն, երգով խենթանան
քո բախտի աստղերը վճիտ:

Դու այնպես ինքնաբուխ խոսիր
քո կապույտ մանկության մասին,
որ մաքուր երազով լցվեն
քեզ լսող հուսահատ մարդիկ:

Դու այնպես կախարդված լսիր
բնության ձայները բարի,
որ դառնաս ավելի խոհուն,
ավելի հողեղեն ու ջինջ:

Դու այնպես ինքնատիպ քայլիր,
բյուրանուն ճամփեքով կյանքի,
որ թողած քո լույս հետքերով
զորանա արարման ոգին:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



# Ճարպ Բալու շահը

Բալու շահը ապրում էր Գուջարաթում: Նա շատ ծլատ էր և ոչ մեկի, նույնիսկ իր վրա փող ծախսել չէր սիրում: Մի օր, ճանապարհին, արմավենու վրա հասած պտուղներ տեսավ և ուտել ուզեց: Արմավ շատ էր սիրում:

Բայց ինչպե՞ս հասներ ծառի կատարը: Որևէ մեկին խնդրել չէր ուզում, փող տալուց էր վախենում: Եվ Բալու շահը որոշեց ինքը մագլցել: Ու թեև առաջներում երբեք արմավենի չէր բարձրացել, մի կերպ կարողացավ հասնել գագաթին: Հենց այն է, ուզում էր մի արմավ պոկել, երբ պատահաբար ցած նայեց ու այնպես վախեցավ բարձրությունից, որ սկսեց դողալ: Եվ քանի որ մագլցելուց էլ արդեն հոգնել էր, ձեռքերն սկսեցին թուլանալ: Նա զգաց, որ ցած կընկնի: Եվ, անշուշտ, կմեռնի: Մարդ չկար, որին օգնության կանչեր, և դիմեց աստծուն: Խոստացավ ամեն ինչ անել նրան գոհացնելու համար: Եվ հանդիսավոր երդում տվեց, որ հազար բրահմայի կկերակրի, միայն թե բարեհաջող ցած իջնի: Երդումը նրան քաջություն ներշնչեց:

Բալու շահն սկսեց ցած սահել ծառից: Երբ կեսն արդեն իջել էր, նորից ներքև նայեց: Այժմ կարծես այնքան էլ վտանգավոր չէր, և նա թեթևացած շունչ քաշեց: Ապա մտածեց, որ շտապել էր երդում տալ: Բրահմաների թիվը, որոնց նա խոստացել էր կերակրել, մեծ թվաց՝ ոչինչ, աստված կգոհանա նաև հինգ հարյուր բրահմայով:

Մոտենում էր գետնին ու հիմա արդեն հինգ հարյուրն էլ շատ համարեց:

— Աստված կհասկանա, թե ինչքան դժվար է ինձ համար այդքան աղքատ կե-

ռակրելը,— ասաց նա ինքնիրեն։— Ավելի խելացի կլինի, եթե բավարարվեր երկու հարյուրով։

Եվ որքան մոտենում էր գետնին, այնքան ավելի ու ավելի էր նվազեցնում խոստացած թիվը։

Իսկ երբ վերջապես ցած իջավ, վերջին անգամ հանդիսավոր երդում տվեց, որ աստծուն գոհացնելու համար կկերակրի մեկ բրահմայի։

Այս որոշումն ընդունելուց հետո Բալու շահը ճանապարհ ընկավ տուն։ Ամբողջ ճանապարհին մտքում հաշիվ էր անում, թե դրա համար ինչքան փող կծախսվի։ Ծախսը նրան մեծ թվաց, և որոշեց պակասեցնել։ Բայց ինչպե՞ս։ Լավագույն միջոցը, մտածեց նա, մի ամենաքչակեր բրահմայի տուն հրավիրելն է։ Իսկ որտեղի՞ց գտներ այդպիսի մեկին։ Եվ նա սկսեց ըզգուշորեն հարցուփորձ անել գյուղում։ Նրան ասացին, որ Ջանքի Դազ անունով մի բրահմա շատ քիչ է ուտում։ Ջանքի Դազը, որ խելացի ու հնարամիտ մարդ էր, լսել էր Բալու շահի մասին։ Նա պատրաստակամորեն ընդունեց հրավերը։

Բալու շահը պատմեց կնոջը իր հանդիսավոր երդման մասին և ասաց, որ արդեն հրավիրել է մեկին։

— Աստծուն գոհացնելու համար մենք պետք է կերակրենք նրան, Շամալի,— ասաց նա,— և անենք այն, ինչ պահանջվում է։ Բայց հիշիր, որ պետք է աշխատենք քիչ փող ծախսել։

Իսկ պատահեց այնպես, որ հաջորդ օրը շուկայի օր էր, և Բալու շահը ստիպված էր շուկա գնալ գործ անելու, որպեսզի վերականգներ աղքատ բրահմայի պատճառած վնասը։ Նա պատվիրեց կնոջը, որ ուշադիր հետևի հյուրին։

— Բանն այն է, որ ես ինքս պետք է նրան հսկեի, բայց ուրիշ կարևոր գործեր ունեմ,— բացատրեց նա։

Երբ Ջանքի Դազը առավոտ շուտ տեսավ գործի շտապող Բալու շահին, որոշեց անմիջապես գնալ նրանց տուն և տեսնել, թե ինչն ինչոց է։ Շամալին ապշեց՝ հյուրին այդքան վաղ տեսնելով։ Այնուամենայնիվ, քաղաքավարի ընդունեց և առաջարկեց նստել։

— Տաճար էի գնում,— բացատրեց Ջանքի Դազը,— տեսա Բալու շահը ինչ-որ տեղ է շտապում, մտածեցի՝ օգնության կամ խորհրդի կարիք կունենաք, և որոշեցի հանդիպել։

— Շատ շնորհակալ եմ,— պատասխանեց Շամալին,— ամեն ինչ արվում է ըստ օրենքի ու պայմանի, բայց եթե ուրիշ մի բան էլ ես ուզում՝ կանեմ։

— Շատ բան չէ իմ ուզածը,— ասաց հյուրը,— թեև շահը երդվել է մի հոգու կերակրել, բայց դու կերակուր պատրաստիր տասը և ավելի մարդու համար։ Կարծում եմ, գիտես, ինչքան ուտելիք ես մատուցելու։

Շամալին թվարկեց իր պատրաստած կերակուրները։

— Շատ լավ,— ասաց Ջանքի Դազը,— բայց չէր խանգարի, եթե երեք քաղցրավենիք էլ ավելացնեիր Գանապաթի աստծուն գոհացնելու համար։ Ախր, անհրաժեշտ է բոլոր աստվածներին էլ գոհացնել։

Ապա Ջանքի Դազը հրաժեշտ տվեց ու գնաց։

Կեսօրվա մոտ Շամալին արդեն պատրաստել էր բոլոր կերակուրները։ Շուտով հյուրը ժամանեց։

— Հուսով եմ՝ ամեն ինչ պատրաստ է,— ասաց նա։— Ուրեմն՝ նախ գոհացնենք տան աստվածներին։

Շամալին լամպը վառեց և ուտելիքները դրեց լույսի տակ։

Ապա Ջանքի Դազն ասաց.

— Երևում է, հասկացող կին ես։ Շատ ճիշտ առաջարկեցիր ուտելիքը։ Բայց ի՞նչ կասես այն երկու ոսկեդրամների մասին, որ հյուրասիրության մասն են կազմում։ Չէ՞ որ դա շատ կարևոր է։

Շամալին չէր հիշում, որ ամուսինը որևէ բան ասած լիներ ոսկեդրամների մասին։ Բայց քանի որ դա այդքան կարևոր սովորույթ էր, նա չկարողացավ վիճել և ստիպված համաձայնեց։

Ջանքի Դազը նստեց ուտելու։ Կերավ՝ ինչքան կարող էր։ Ապա մնացած ուտելիքը հավաքեց, որ տանի իր ընտանիքին։ Իսկ երկու ոսկեդրամները, որ նվիրաբերվել էին աստվածներին, դրեց քսակը և ասաց.

— Ուտելիքը լավն էր, աստված գոհ կլինի քեզնից էլ, Բալու շահից էլ։ Միայն մի փոքրիկ արարողություն է մնացել, այն էլ «դակշինային» նվիրաբերելու համար է։

Շամալին լավ չհասկացավ, թե խոսքն ինչի մասին է։

Ջանքի Դազը բացատրեց.

— Երբ կերակրում ես բրահմային, ճաշը կատարյալ չի լինի, եթե ամենաքիչը երկու ոսկեդրամ էլ չտաս նրան։ Դա հայտնի է բոլորին։ Անկասկած, քեզ նման բա-

Նկարը՝ ՀԵՆՐԻԿ ՄԱՄՅԱՆԻ



րեխիղճ կինը կիմանա այդ:

Խեղճ կինը շատ էր վախենում, որ ամուսինը դժգոհի, բայց եթե դա կարևոր և հայտնի սովորույթ էր, պարտավոր էր այդ էլ անել: Եվ Շամալին երկու ոսկեդրամ ևս տվեց բրահմային:

Վերջապես, ամեն ինչից գոհ՝ Ջանֆի Դագը դուրս եկավ: Տուն հասնելուն պես կանչեց կնոջն ու ասաց, որ շուտով Բալու շահը կգա իր եռևից և շատ բարկացած կլինի: Եվ զգուշորեն բացատրեց կնոջը, թե ինչ պետք է անել: Ապա Ջանֆի Դագը գնաց իր սենյակն ու խոր քուն մտավ:

Ուշ երեկոյան Բալու շահը տուն վերադարձավ: Շամալին պատմեց եղածը: Բալու շահը կատաղեց, մի մեծ փայտ վերցրեց և վազեց Ջանֆի Դագի տուն:

Հենց որ բրահմայի կինը տեսավ մոտեցող Բալու շահին, սկսեց ողբալ ու կուրծք ծեծել:

— Օ՜, դու չարագործ,— գոչեց նա,— այդ ի՞նչ արեցիր ամուսնուս: Դու թունավորեցիր նրան, նա մեռնում է: Եթե նա մեռնի, քեզ կբռնեն ու կկախեն: Միևնույն է, դու չես փախչի: Օ՜, եթե ամուսինս մեռնի, ի՞նչ ենք անելու ես ու երեխաներս:

— Էլ մի գոռա այդպես,— վախեցած աղաչում է Բալու շահը:— Մարդիկ կլսեն: Ինչո՞ւ բժիշկ չես կանչում:

— Բժի՞շկ,— ճչաց կինը:— Իսկ փո՞ղ: Մենք բժշկի փող ունե՞նք: Տասը ոսկեդրամ տուր, և ես հենց հիմա բժիշկ կկանչեմ: Իսկ եթե նա շլավանա, քեզ անպայման կկախեն:

— Ի սեր աստծո,— աղաչեց ժլատը,— սպասիր տուն վազեմ: Մարդ ուղարկիր ինձ հետ, ես կտամ տասը ոսկին: Հարկավոր է կանչել լավագույն բժշկին:

Բալու շահը վերցրեց նրանց որդուն և, ինչքան ոտքերում ուժ կար, վազեց տուն:

— Ինչո՞ւ ես շտապում, ի՞նչ է պատահել,— հարցրեց կինը:

— Պատահել է վատթարագույնը,—պատասխանեց Բալու շահը:— Դու թունավորել ես Ջանֆի Դագին, և ինձ կկախեն:

Նա արագ բացեց արկղը, հանեց տասը ոսկին, տվեց տղային և ասաց.— Շուտ վազիր, ոսկիները տուր մորդ և ասա, թող ամենալավ բժշկին կանչի:

Տղան վերցրեց ոսկիները և վազեց տուն: Իսկ Բալու շահը հանդիսավոր երդում տըվեց, որ հազար և մեկ բրահմայի կկերակրի, եթե փրկվի այս փորձանքից:

Անգլերենից թարգմանեց
ՍՈՆԱ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԸ



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

ԶՐՈՒՅՑ ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
բանասիրական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

## Երվանդունիների հաղթանակը

Ռուշա II-ից հետո Արարատի թագավորության և Ասորեստանի հարաբերությունները փոխվեցին: Արարատի թագավորության ծայրամասերից մի քանի գավառներ անջատվեցին: Դրանք երևի Մարաստանի ազդեցությանն էին ենթարկվել: Արարատի թագավորությունն իր վաղեմի ուժը կորցնում էր: Ասորեստանն սկսեց հովանավորել հայոց պետությանը, իսկ դա նշանակում է, որ անկախ ու հզոր Հայքը ընկնում էր Ասորեստանի ազդեցության տակ: Մ. թ. ա. 645 թ. գահ բարձրացած Սարդուր III-ը Ասորեստանի թագավորին իր նախորդների նման այլևս եղբայր չէր անվանում, այլ կոչում էր տեր կամ՝ իմ տեր թագավոր:

Ռուշա II-ին անմիջականորեն հաջորդած թագավորների ժամանակ միայն մանր-մունր նորխուռիերեն արձանագրություններ էին գրվում, այն էլ փոքր սալիկների, կարասների ու կնիքների վրա: Այլևս չէին գրվում այնպիսի մեծ արձանագրություններ, որպիսիք փորագրվում էին Մենուայի և Արա Առաջինի ժամանակներում: Հավանաբար, սեպագրերի կաղապարային լեզուն գրեթե մոռացվել այդ ժամանակվա լեզուն էր և Հարավ-ասեպագիր նշաններ և նորխուռիերեն բառեր էին հիշում:

Այդ ժամանակ Հայքում ավելի շատ գրում էին արամերեն: Արամերենը, որ կոչվում է նաև քաղդերեն, Բաբելոնի այդ ժամանակվա լեզուն էր և Հարավ-արևմտյան Ասիայի շատ երկրներում էր գրավոր գործածվում: Հայքում արամերեն չէին խոսում, ինչպես որ չէին խոսում ասուրաբաբելերեն ու նորխուռիերեն: Այս լեզուներով, ինչպես արդեն գիտեք, հայերը միայն գրել են: Բայց եթե ասուրաբաբելերեն և նորխուռիերեն գրում էին քարերի, սալիկների և այլ կարծր առարկաների վրա, ապա արամերեն գրում էին պապիրուսների վրա: **Պապիրուս** կոչվում էր այն ժամանակվա թուղթը, որ պատրաստում էին պապիրուս բույսի ցողուններից: Պապիրուսը երկար էր լինում, նրա վրա արամերեն գրում էին և փաթեթ սարքում: Թեշիբայինի ամրոցում եղել են պապիրուսե այդպիսի փաթեթներ, բայց չեն պահպանվել:

Արարատի Հայոց թագավորության այդ ժամանակաշրջանի մասին որոշ տեղեկություններ տալիս են Ասորեստանի թագավոր Աշուրբանիպալի ասուրաբաբելերեն գրված արձանագրությունները: Աշուրբանիպալը թագավորել է մ. թ. ա. 668—634 թվականներին: Այդ ժամանակ Հայքում թագավոր էին՝ նախ Ռուշա II-ը, ապա՝ Սարդուր III-ը: Աշուրբանիպալը գրում է,



Վանի ամրոցը



Հայ զինվորը փայտյա արձանիկ (Երեվան-Էրեբունի)

որ այս Սարդուրը հնազանդորեն Հայաստանից ծանր հարկեր էր բերում Ասորեստան և դեսպաններ էր ուղարկում իր առողջության մասին տեղեկանալու:

Իսկ մի նամակում, որ Աշուրբանիպալը գրել է Սարդուր III-ին, սրան որդի է անվանում և ավելացնում՝ «Ամբողջ Ասորեստանը բարվոք վիճակում է, քեզ, քո պալատին և քո երկրին խաղաղություն եմ մաղթում»:

Մենք արդեն գիտենք, որ Ռուշա II-ի ժամանակ հայ իշխանների մի մասը դեմ էր Ասորեստանի հետ մտերիմ հարաբերություններ պահպանելուն, նրանք գիտեին, որ այդ մտերմությունը կարող է դառնալ հնազանդություն, և Արարատի թագավորությունը կենթարկվի Ասորեստանին: Այդպես էլ եղավ:

Նախորդ զրույցից հիշենք նաև, որ Ռուշա II-ի ժամանակ, երբ Ասորեստանում ապստամբություն ծագեց Սենեքերիմ թագավորի դեմ, Հայաստանում շատ իշխաններ ապստամբների կողմն էին: Իսկ հայոց թագավորը՝ Ռուշան, այդ ապըստամբության հակառակորդն էր, նա պաշտպանում էր Սենեքերիմի որդի Ասարհադոնին, որը ճնշեց ապստամբությունը: Այդ ժամանակ Սենեքերիմին սպանող և Հայաստան փախած նրա մյուս երկու որդիներից մեկը՝ Սարասարը (Սանասարը), օգնություն ստացավ Հայոց իշխան Սկայորդուց: Սա Վան-Տոսպից հարավ գտնվող Հայոց ձորի տիրակալն էր: Մովսես Խորենացին գրում է. «Սանասարին մեր քաջ նախնի Սկայորդին բնակեցնում է Ասորեստանի սահմանների մոտ, մեր աշխարհի արևմտյան հարավում»: Դա Սասունն էր, որը, միաժամանակ սկսել էր չենթարկվել Արարատի Հայոց թագավորությանը՝ Վան-Տոսպին: Սկայորդին և նրա համախոհները, դժգոհելով Ասորեստանից և Արարատի թագավորությունից, գաղտնի կապեր էին հաստատել մարերի ու սկյութների հետ: Եվ ահա Սկայորդու որդի Պարույրը մարական զորքերի օգնությամբ տապալեց հայոց Սարդուր թագավորին և գրավեց ամբողջ երկրի իշխանությունը: Պետք է ասել, որ Պարույրի դաշնակից մարերը դաժան էին վարվում հայոց քաղաքների հետ՝ այրում էին, ավերում: Այդպես Հայաստանը Ասորեստանի գերիշխանությունից ազատվեց, բայց նրան սպառնում էր Մարաստանի գերիշխանությունը:

Սկայորդու իշխանական տունը կոչվում էր Երվանդյան կամ Երվանդունի: Այդպիսով, Պարույրը մարերի օգնությամբ տապալեց Արամի հայոց թագավորական տունը, որը երկար ժամանակ



Բաբելոն (Իշտար աստծու դարպասը)

իշխում էր Հայքում: Իշխանությունն անցավ Հայոց Երվանդունիների տոհմին: Մայրաքաղաք Տուշպը (Վանը) սկսեց կոչվել Երվանդավան:

Ինչպես գիտենք, հնում թագավորները երկու և ավելի անուններ էին ունենում: Երբ թագաժառանգը գահ էր բարձրանում, նրան նոր անուն էին տալիս: Կամ նույն թագավորին մի լեզվով մի անուն էին տալիս, մի ուրիշ լեզվով՝ մի այլ անուն: Այդպես, Պարույրը ժամանակի նորխուռիերեն փոքրիկ արձանագրությունների մեջ կոչվում է Էրիմենա, իսկ նրա որդին կրում էր Վանի նախկին թագավորների մեջ ընդունված անունը՝ Ռուսա III: Խորենացին նրան Հրաչյա է անվանում:

Պարույրի ժամանակ Մարաստանի թագավորն էր Կիաքսարը, որի մյուս անունն էր Վարբակես: Նրա հետ միացյալ էին մարերի ցեղակից սկյութների զորքերը: Կիաքսարը դաշինք կնքեց Բաբելոնի հետ՝ Ասորեստանի դեմ պատերազմելու համար: Նա հայոց Պարույրին նույնպես այդ դաշինքի մեջ ներգրավեց: Մ. թ. ա. 612 թվականին մարերի, սկյութների, հայերի և բաբելացիների միացյալ զորքերը պաշարեցին Ասորեստանի մայրաքաղաք Նինվեն: Ասորեստանի թագավոր Աշուրուբալիտի զորքերը երկար դիմադրեցին, բայց պարտվեցին: Մարերի և նրանց դաշնակիցների միացյալ զորքերը մ. թ. ա. 612 թ. օգոստոսին գրավեցին Նինվեն և ավերեցին: Աշուրուբալիտը փախավ, բայց երկար չկարողացավ դիմադրել: Նա եղավ Ասորեստանի վերջին թագավորը: Ասորեստանի զորքն ամրացավ Կարքեմիշ քաղաքում, բայց մ. թ. ա. 605 թ. մարերը գրավեցին նաև այդ քաղաքը: Դրանով Ասորեստանի պետությունը վերացավ: Արևելքի այդ հզոր թագավորությունը, որ Հայքի գլխավոր հակառակորդն էր մի քանի հարյուրամյակ, վերջնականապես դուրս եկավ պատմության ասպարեզից:

Նրա տեղն Արևելքում գրավեց հզորացած Մարաստանը; Մ. թ. ա. 612 թ. Նինվեն գրավելու առթիվ Մարաստանի թագավոր Կիաքսարը հայոց Պարույրին թագ նվիրեց, որով ուզում էր նրան դարձնել իրեն ենթակա թագավոր:

Մարերը պատրաստվում էին գրավել նաև Բաբելոնը, և հայերը մասնակցելու էին նաև այդ արշավանքին: Աստվածաշնչում կա Երեմիայի մարգարեության գիրքը: Նրա մեջ հրեաների մարգարե Երեմիան հրավիրում է մի քանի պետություններ՝ հաղթելու Հրեաստանի թշնամի Բաբելոնին: Նա ասում է. «Երկրի մեջ դրոշակ բարձրացրեք, ժողովուրդների մեջ փող հնչեցրեք, նրա (Բաբելոնի) դեմ ժողովուրդներ հանեք, նրա դեմ կանչեք Արարատի, Մինիի և Ասքանազի թագավորություններրը... Մարաստանի թագավորներին, նրա մարզպաններին և բոլոր կուսակալներին»: Սա մ. թ. ա. 592 թվականն էր: Ինչպես տեսնում ենք, հրեաները Հայքը շարունակում էին **Արարատի թագավորություն** անվանել: Իսկ ասուրաբաբելերեն արձանագրություններում մինչև մ. թ. ա. 4-րդ դարը Հայքը շարունակում էր կոչվել **Ուրարտու (Ուրաշտու):** Պարսիկներն ու մարերը հնուց ի վեր Հայքն անվանել են **Արմինա, Արմենիա,** հայերին՝ **արմինիյա, արմին, արման,** հույները նույնպես Հայքը կոչում էին **Արմենիա,** հայերին՝ **արմինի:** Երբ ասուրաբաբելացիներ այլևս չկային, ասուրաբաբելերենն էլ գործածությունից բոլորովին դուրս եկավ, Հայքի **Ուրարտու** անունը մոռացվեց: Մոռացվեց նաև հայերի ասուրաբաբելերեն անունը՝ **ուրարտացա:** Իշխող դարձան պարսկերեն և հունարեն լեզուները, և նրանցում գործածվող **Արմենիա-ն, արման-ը, արմին-**ը տարածվեց ամբողջ աշխարհում, բացի Վրաստանից: Վրացիները, ինչպես գիտենք, հնուց ի վեր հայերին կոչել են **սոմեխի,** Հայքը՝ **Սոմխեթի:**

Իսկ Երեմիայի հիշատակած Ասքանազի թագավորությունը սկյութներին է վերաբերում, Մինայի թագավորությունը Մեծ Հայքից հարավ արևելք գտնվող Մանա երկիրն է:

Միջագետքի շրջակա երկրներում, նաև Հայքում սկսեց նվազել Ասորեստանի ու Բաբելոնի մշակութային ազդեցությունը: Նույն շրջանում մեծացավ իրանական ազդեցությունը: Հիշենք, որ մարերը, պարսիկները, սկյութները իրանական ժողովուրդներ էին: Իրանական էին նաև պարթևները և մի քանի այլ ժողովուրդներ, որոնք Հայքի հարևաններն էին: Հարավ-արևմտյան Ասիայի բոլոր ժողովուրդների մեջ ամենաշատը դառնում էին իրանականները: Ամենահզոր պետությունն էլ իրանական Մարաստանն էր, որին հետո փոխարինեց իրանական Պարսկաստանը, ապա՝ իրանական Պարթևստանը:

(շարունակելի)

Եղիշե Չարենց





# Մահվան տեսիլ

Որպես լքված թավջութակի ձգված մի լար՝
Դողում է սիրտս կարոտով մի պհարկու.
Կարոտներիս գագաթն է այն՝ վերջին քնար,—
Մի պիրկ պարան ու երկնուղեշ փայտեր երկու:
Որպես բախտիս մութ քամահրանքը, կամ որպես
Մի հին խոստում, որ անկատար, դրժած թողի—
Կախաղանի փայտերն ահա քաղաքի մեջ
Կանգնել են, սեգ, ու սպասում են կախվողի:
Կանգնել են լուռ, իրար կքած, փայտեր երկու
Ու մեջտեղում դողում է, մեղկ ու երերուն,
Մի գորշ պարան, ինչպես տխուր այս օրերում
Անբոց մորմոքը նաիրյան իմ ո՛րբ հոգու:
Իջել է շուրջը մի անհուր իրիկնաժամ,
Ու լռություն մի անստվեր, անդուռ, անդող,
Ինչպես մորմոքը օրերի, ինչպես դաժան
Մահվան թախիծը՝ իմ անլույր սիրտը բանտող:
Ու խանութները, գորշ կքած, ու այն մարդիկ,
Որ հավաքվել են փայտերի շուրջը հիմա,
Մահվա՜ն բեկուն այդ քնարին այդքան մոտիկ—
Ի՞նչ են ուզում՝ այդքան տխուր ու ակամա:
Եվ արդյոք ո՞վ է երազել այդքան դաժան—



Ու լուսավոր առավոտները իմ հոգու
Ո՞վ դարձրեց— մի անկրակ իրիկնաժամ,
Ու գորշ պարան, ու երկնուղեշ փայտե՛ր երկու:
Գուցե այդ ե՛ս եմ, որ սրտով իմ լուսնահար
Ո՛չ մի կրակ հեռուներից ձեզ չբերի,
Ու ցանկացա, որ չօրհներգե ո՛չ մի քնար
Լուսապսակ, պայծառ գալիքը Նաիրի...

Ե՜րթամ հիմա: Ու կարոտով անմխիթար,
Իմ երգիչի երազներով ու հրերով,
Անհրապույր իմ օրերի երգով մթար
Ու Նաիրյան իմ երազի վերջին սիրով,—
Երթամ մարող ու մարմրող իրիկվա մեջ,
Որպես ուրու հալածական, որպես տեսիլ—
Տա՜մ պարանոցս կարոտին այն երկնուղեշ
Ու օրորվեմ՝ եղերական ու անբասիր...
Թող ո՛չ մի զոհ չպահանջվի ինձնից բացի,
...իշ ոտքեր կախաղանին թող մոտ չգան.
Ու թող տեսնեն ի՛մ աչքերի մեջ կախվածի,
...բո՛րբ երկիր, լուսապսակ քո ապագան:
Թող դուրս ընկած իմ աչքերի մեջ կախվածի
Նոքա տեսնեն պայծառ օրերդ ապագա,—
Թող ո՛չ մի զոհ չպահանջվի ինձնից բացի,
Ո՛չ մի ստվեր կախաղանին թող մոտ չգա...

# ԻՆՉԸ ԿԱՐՈՂ Է ՓՈԽԱՐԻՆԵԼ ՀԱՑԻՆ

Ամեն ինչ կարող է պատահել մարդու հետ: Մեր օրերում էլ հնարավոր է մոլորվել բնության մեջ, օրերով թափառել մինչև մարդկանց կամ բնակավայրերի հանդիպելը: Էլ չենք խոսում այն մասին, որ միանգամայն հնարավոր է հարկադրական մեկուսացումը (արտակարգ իրավիճակ, պատերազմական դրություն և այլն): Այս դեպքում ինչպե՞ս կարելի է ելք գտնել ստեղծված դրությունից, ապավինելով մայր բնությանը:

Առաջին հերթին պետք է լուծել պատրսպարանի և սննդի հարցը:

Ինչպես գիտենք, մեր ամենակարևոր սննդամիջոցը հացն է: Մենք այնպես ենք սովորել հացին, որ առանց դրա երկար ժամանակ դժվար ենք դիմանում: Հացին ոչինչ փոխարինել չի կարող: Ռուս մեծ գիտնական Կ. Ա. Տիմիրյազևը հացաթխման գյուտը համարում է մարդկային պայծառ մտքի ամենանշանակալից նվաճումներից, նրա մեծագույն հայտնագործություններից մեկը, որը հսկայական նշանակություն է ունեցել մարդու հոգևոր ու ֆիզիկական ձևավորման գործում: Հացն իր մեջ պարունակում է մարդու համար անհրաժեշտ բոլոր սննդամթերքները՝ սպիտակուցներ, ճարպեր, ածխաջրեր, այն էլ չափազանց դյուրամարս վիճակում: Ինչպես հայտնի է, այդ նյութերի քանակությամբ և դյուրամարսությամբ էլ որոշվում է այս կամ այն սննդամթերքի արժեքը: 100 գ ցորենի հացը պարունակում է 9 գ սպիտակուցներ, 0,5 գ ճարպեր, 1 գ շաքար, 46 գ օսլա: Ահա թե ինչու, 5 հազար տարուց ավելի է, ինչ մարդը ցորեն է մշակում:

Ահա թե ինչու բնության մեջ մեկուսացած մարդը առաջին հերթին ձգտում է հացին փոխարինող գտնել: Սնվելով վայրի պտուղներով, բանջարաբույսերով, կենդանիների մսով, նա մշտապես հացի կարիք է զգում և աշխատում է վայրի բր-

նության մեջ գտնել այնպիսի բույսեր, որոնք կարող են փոխարինել հացին:

Տեսե՞լ եք հարսնամատ կամ ջրաշուշան կոչվող բույսը: Աճում է փոքրիկ, ոչ խոր լճակներում: Շատ գեղեցիկ բույս է, աչքի է ընկնում կլորավուն, ջրի մակերեսին փռված լայն տերևներով և սպիտակ, խոշոր ծաղիկներով: Հանդիպում է Կալինինոյի, Ստեփանավանի, Ղուկասյանի, Ամասիայի շրջաններում և հանրապետության այլ շրջանների ջրավազաններում: Եթե փորձենք ձգելով դուրս հանել այս բույսի տերևները, ապա ջրից դուրս կգա ջրաշուշանի երկար, օձանման, կոճղարմատաձև ստորջրյա ցողունը: Եթե այդ ցողունները մաքրենք և մանր կտորների վերածենք (մոտավորապես մեկ սմ երկարությամբ), ապա չորացնենք արևի տակ կամ վառարանների մոտ և աղանք, կստացվի ալրանման զանգված: Սակայն քանի որ ջրաշուշանի ստորջրյա ցողունը մեծ քանակությամբ դաբաղանյութեր է պարունակում, անհրաժեշտ է ալյուրը մի քանի անգամ լվանալ ջրի մեջ, թողնելով որ այն նստի հատակին, և ջուրը թափել: Հատակին նստած թաց ալյուրը անհրաժեշտ է փռել բարակ շերտով և չորացնել արևի տակ: Ստացված ալյուրը միանգամայն պիտանի է խմոր պատրաստելու և հաց թխելու համար, խմորը պետք է թթվեցնել, որից հետո միայն կարելի է բլիթներ թխել:

Ալյուր կարելի է պատրաստել նաև ձեզ քաջ հայտնի մի այլ բույսից՝ կեռոնից կամ որձախոտից: Լատիներեն այդ բույսը կոչվում է «տիֆա»: Աճում է մեր հանրապետության ցածրադիր շրջաններում, գետերի, լճերի ափերին: Հատկապես շատ կան Արաքսի ճահճուտներում, գետափերում: Հանդիպում է նաև Հայկական ՍՍՀ-ի հյուսիս-արևելյան շրջաններում, քաղցրահամ ջրերի, ճահիճների ափին և արտաքին տեսքով եղեգն է հիշեցնում: Նրա գեղեցիկ ծաղկաբույլերը, որոնք կլորավուն խոզանակների են նման, օգտագործվում են ծաղկային վերադաշնակումների ու հարդարումների համար: Կեռոնի կոճղարմատները ևս պիտանի են ալյուր պատրաստելու և հաց թխելու համար: Դրանք մինչև 60 սմ երկարության են հասնում և ունենում են 2,5 սմ հաստություն: Կոճղարմատի չոր զանգվածը պարունակում է 46 տոկոս օսլա, 11 տոկոս շաքար և մինչև 24 տոկոս սպիտակուցային նյութեր: Ալյուր պատրաստելու համար անհրաժեշտ է կեռոնի կոճղարմատները կտրատել 0,5—1 սմ երկարությամբ, չորացնել վառարաններում և աղալ:

Նույն եղանակով կարելի է ալյուր ստանալ նաև սովորական եղեգնի (ֆրագմիտես կոմունիս) կոճղարմատներից: Ինչպես տեսնում ենք, այդ նպատակի համար մեր պայմաններում պիտանի են միայն ջրային բույսերը կամ այն բույսերը, որոնք աճում են Արարատյան դաշտի, ինչպես նաև այլ շրջանների լճերի և ճահիճների ափերին:

Յուրահատուկ «հաց» կարելի է ստանալ նաև փնջակոկոռ կոչվող ջրային բույսից (լատիներեն կոչվում է տրապա նատանս): Կեչու նման տերևներ ունի, որոնք լողում են ջրի մակերեսին, քանի որ տերևակոթունները սնամեջ են, լցված օդով: Նուրբ, բարակ ստորջրյա ցողունը, որն ամրացած է ջրավազանի հատակին, իր վրա կրում է նուրբ, փետրաձև կանաչավուն արմատներ, որոնց շատերը ըստորջրյա տերևների տեղ են դնում: Մայիսի վերջին վերջրյա վարդակի կենտրոնում բացվում են սպիտակ, գեղեցիկ ծաղիկները, ընդ որում դրանք բացվում են առավոտյան կամ երեկոյան: Պտուղն ունի 2—5 սմ երկարություն, 2—3 կոր եղջրիկներ, որի պատճառով հաճախ անվանում են սատանայի ընկույզ, եղջրավոր ընկույզ, ջրային շագանակ, ջրային ընկույզ կամ չիլիմ: Հանդիպում է նաև մեր հանրապետության հյուսիս-արևելյան շրջանների ջրավազաններում:

Այս ընկույզները շատ համեղ են, սննդարար, պարունակում են 3 տոկոս ճարպեր, 24 տոկոս սպիտակուցներ և 55 տոկոս օսլա: Սննդի մեջ օգտագործում են հում վիճակում կամ կարտոֆիլի նման խորովում են տաք մոխրի մեջ: «Հաց» կամ «ձավար» են պատրաստում հենց այդ պտուղներից:

Պետք է ասել, որ չիլիմը տարածման շատ մեծ շրջան է զբաղեցնում. հյուսիսային շրջաններից մինչև Ուկրաինա, Բելոռուսիա, Սիբիր, Ղազախստան, Հնդկաստան, Չինաստան, Պակիստան։ Ամեն տարի Վոլգա գետի ավազանում, Ուկրաինայում, Բելոռուսիայում, Ղազախստանում և այլ վայրերում հարյուրավոր տոննաներով չիլիմ են մթերում: Երկրագնդի շատ շրջաններում (Հնդկաստան, Չինաստան, Պակիստան) չիլիմը բնակչության հիմնական սնունդն է հանդիսանում: Հնդկաստանի Քաշմիր նահանգում 40 հազար




մարդ տարվա ընթացքում 5 ամիս շարունակ սնվում է չիլիմի պտուղներով: Սովի տարիներին այս բույսը փրկում է հազարավոր հնդիկների կյանքը: Չիլիմը նաև հրաշալի դեղամիջոց է դիզենտերիայի դեմ: Հնդկաստանում այս բույսը «սինգարա» է կոչվում: Իսկ որտեղի՞ց գտնել ամանեղեն, տաշտ՝ խմոր հունցելու համար, կամ ինչպե՞ս հաց թխել արդեն պատրաստ խմորից:

Եթե դուք բավականին հնարամիտ եք և ոռնող, դժվար չէ հայթայթել այդ բոլորը: Ամանեղեն կարելի է պատրաստել փայտից, օգտագործելով անտառում տապալված ծառերը: Դա առանձնապես մեծ հմտություն չի պահանջում: Իսկ ինչպե՞ս կարելի է աղալ բույսերի չորացրած կոճղարմատներն ու ցողունները:

Այս դեպքում պետք է ընդօրինակել մեր հեռավոր նախնիներին, որոնք ցորենը աղալու համար օգտագործում էին քարի երկանքներ: Այդպիսի գործիքներ մինչև այժմ էլ պահպանվել են մեր գյուղերում: Դրանք 2 տափուկ, կլոր քարեր են, հարթ մակերեսներով: Ներքևի քարի կենտրոնում ելուստ կա (երբեմն դրան փոխարինում է երկաթյա ձողը): Վերևի քարի միջին մասում 5—10 սմ տրամագիծ ունեցող անցք կա: Եզրին ամրացված է փայտյա բռնակ: Այդ քարերը իրար վրա են դնում և վերևի անցքից հատիկները կամ ցողունի կըտորները լցնելով՝ վերևի սկավառակը պտտեցնում: Այսպիսի աղաց պատրաստելը ոչ մի դժվարություն չի ներկայացնում: Իսկ հաց կարելի է թխել այնպես, ինչպես ներկայումս վարվում են հովիվները ու որսորդները: Ողորկ քարերից հատուկ օջախ են պատրաստում, կրակ վառում, քարերը տաքացնում և դրանց վրա թխում բլիթները:

Մի խոսքով, հնարամիտ մարդը ամեն ինչի ելքը գտնում է:

Չմոռանանք, որ այս բույսերը ինչ-որ չափով են միայն փոխարինում հացին և ոչ լիարժեք: Երբ մարդը մոլորվել է անտառում, երբ ակամայից հայտնվել է այնպիսի պայմաններում, որտեղ հաց չկա, կարող է ժամանակավորապես սնվել նշված բույսերով: Սակայն միայն ժամանակավորապես, քանի որ, կրկնում ենք, երկար ժամանակով հացին լիարժեք փոխարինող սննդամթերք մեզ հայտնի չէ:

Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Կենսաբանական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր



ՎԱԶԳԵՆ ՍԱՀԱԿՅԱՆ, Երևան

# Գարնան շնչով

Սիրում եմ ես երկինքը ջինջ,
Գարնան արև ու ծաղիկ,
Զարթոնք ապրող բնության մեջ
Ո՞ր մեկը չէ գեղեցիկ:

Մոտիկ սարի կանաչ լանջը,
Ծաղիկները բազմագույն,
Հովիվների ազդու կանչը
Ձորերի մեջ գրնգուն:

Սեգ սարերից փչող հովը,
Մարդու դեմքը մեղմ շոյող,
Քնից զարթնող մեր մայր հողը՝
Ծով բարիքներ պարգևող:

Դաշտերի մեջ նրանց տերը
Կանգնած հպարտ, առնական,
Նրա ճարտար, պինդ ձեռքերը
Քարին, հողին շունչ կտան:

Գարունը՝ կյանք, կարկաչող
գետ,
Միշտ ալեհեր, միշտ ջահել,
Այդ հավերժող բնության հետ
Մարդն իր կյանքն է խառնել:

Սիրում եմ ես գարնան շունչը,
Ծաղկանց բույրը, խնդություն,
Հավերժական բնության մեջ
Նրա հյուրը՝ լավ մարդուն:

ՀԱՍՄԻԿ ԿՈՒՐՂԻՆՅԱՆ
Արթիկի շրջանի Նոր կյանք
գյուղի միջն. դպրոցի 8-րդ
դասարան



ՎԱՐԴՈՒՀԻ ԽԱՉԱՏՐՅԱՆ, 18 տ.
Լենինական, № 11 դպրոց



**ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ**

## Մայրիկիս

Երանի լինեի
Մի անմեղ ցողիկ,
Ու ջերմ արևի
Վարսերին ձուլված՝
Ելնեի երկինք,
Որ մայր արևից
Ծաղկած երազներ
Ու վառ-վառ հույսեր
Բերեի քնքուշ,
Անգին մայրիկիս:
Ախ, ես կուզեի,
Որ իմ թևերը
Այնքան երկարեն,
Այնքան երկարեն,
Որ գնան, գնան
Աստղերին հասնեն,
Ու ես երկնքից
Երկու լույս աստղ
Բերեի նվեր
Լուսե մայրիկիս
Անմար աչքերին,
Որ նրանք երբեք,
Երբեք չխամրեն:

## Ուսուցչիս

Սուզվեմ օվկիանի
Խորունկ հատակը,
Որ գտնեմ սիրուն
Ոսկե ձկնիկին,
Նրանից խնդրեմ
Բազում օրհնանքներ
Ու ձեզ նվիրեմ
Իմ լույս ուսուցիչ:
Բարձրանամ երկինք,
Իմ մայր արևից
Լույսի ցոլք խնդրեմ,
Ու Ձեզ պարգևեմ,
Իմ ջերմ ուսուցիչ,
Ու մանուկ գարնան
Ծաղկավոր զգեստ
Ձեզ հագցնելով՝
Որպես ձնծաղիկ՝
Անհոգ ծիծաղեմ
Ձեր լույս փեշերին...

## Թռչուններ, բույն դրեք աչքերիս մեջ

Լուսաբացի երգեր,
Ձեր ճիչերով լցրեք
Ակունքը երազներիս,
Լուսե ձնծաղիկներ
Ու շաղիկներ մաքուր,
Շատ եկեք շուրթերիս,
Շատ եկեք, փռվեցեք,
Քանի դեռ մայրամուտը
Սառնասիրտ մթան նման
Մեկընդմիշտ չի համրել
Ձեր ապրած պահերը:
Լուսաբացի երգեր,
Երգեր սիրո, կյանքի,
Երգեր դուք արարման,
Լուսավորեք շուրթերս՝
Ծիծաղել եմ ուզում,
Երգիչ ու երգչուհի թռչուններ,
Բույն դրեք աչքերիս մեջ,
Ու կոպերս թող փակվեն
Ձեր օրորիներքո,
Իրիկունը թող բացվի խաղաղ...
Երգիչ ու երգչուհի թռչուններ,
Բույն դրեք աչքերիս մեջ,
Ձեր երգով ես կբացեմ առավոտը,
Դատարկ սրտերը կլցնեմ ձեր երգով
Ու ճամփաներին արևներ կփռեմ,
Թռչուններ, բույն դրեք աչքերիս մեջ...

ՎԵՐԳԻՆԵ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ
Էջմիածնի շրջան, Գեղակերտի դպրոց,
9-րդ դասարան

ՄԻԽԱԼԻՍ ՂԻՈՒՐՂՈՍ

# Բարի օր, պարոն ուսուցիչ, բարի օր, հորեղբայր



Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Այդ ուսումնական տարում ինձ ուսուցիչ էին նշանակել Սերեզի դաշտավայրի արևմտյան մասում՝ բլրալանջի վրա ծըվարած երկու հազար ազգաբնակչությամբ մի գյուղում: Գյուղացիները վաղ լուսաբացից մինչև գիշեր տքնում էին այդ բերրի հողի վրա, որր մի կողմից նրանց առատ բարիքներ էր պարգևում, իսկ մյուս կողմից անխնա շահագործման կնիքն էր դրել նրանց ճակատներին:

Դպրոցի ճանապարհին «բարի օր» էի ասում ձորի պռնկին իրենց կարմիր գըլխարկները դիմադարձ քամուն թափահարող կակաչներին, իսկ դպրոցի բա-

կում ողջունում էի երեք հարյուր զույգ մանկական աչքերի: Բոլորն էլ անհամբեր, իրենց հետաքրքիր և խուզարկու հայացքներով ոտքից գլուխ ուսումնասիրում էին ինձ, որպեսզի քիչ հետո շրջեն գյուղի աղքատ թաղամասերում և պատմեն ստացած տպավորությունները:

— Բարի օր, պարոն ուսուցիչ, բարի օր, հորեղբայր,— կրկնում էին անընդհատ, որ ինձ զինաթափ էր անում և ավելի էր մերձեցնում նրանց:

— Բարի օր,— պատասխանում էի ես, և իմ հայացքն ընդգրկում էր վտիտ ու դալուկ կերպարանքներ, որոնք հազիվ էին կանգնում սեփական ոտքերի վրա: Նրանց ոտքերին ես տեսնում էի գուլպաներ, իսկ փայտե կոշիկները, որ նրանք հագնում էին, ո՛չ կրունկ, ո՛չ էլ քիթ ունեին: Այսպիսով, ոտքը ազատորեն վայելում էր գարնան զովությունը և ձմռան սառնամանիքը: Նրանց հապճեպորեն լվացված դեմքերին միշտ էլ յուղի հետքեր կարելի էր նկատել: Աչքերում՝ վախ և անորոշություն: Ամեն մի թարթիչից մի «ինչու» էր կախված: Կյանքումս առաջին անգամ այդքան «ինչու»-ներ էի տեսնում՝ մանկական զույգ աչքերի մեջ խտացած:

Թխադեմ, կարճ մազերի երկու հյուսք ծոծրակին, մի աղջնակ մոտեցավ ինձ: Նրա անունը Սոֆուլա էր: Թևերը ետևում՝ նա ուղիղ նայեց իմ աչքերի մեջ, ապա առաջ պարզեց ձեռքերը և ափիս մեջ դրեց մայիսյան մի կարմիր վարդ:

— Ձեզ համար է,— ասաց և խոնարհեց գլուխը ճիշտ այնպես, ինչպես մայիսյան վարդը ափիս մեջ: Ծոյեցի, ապա համբուրեցի Սոֆուլայի գլուխը:

— Ես, պարոն, ձեզ սիրում եմ, ես ձեզ շատ եմ սիրում:

— Ես էլ բոլորիդ սիրում եմ, իմ հոգու ամբողջ ուժով:

Մի մղումով ես նրան վեր բարձրացրի այնքան, ինչքան ուժերս կներեին, որպեսզի միասին ավելի մոտիկից ողջունենք արևը, կյանքը, բոլոր երեխաներին: Հետո ցած իջեցրի, որ գնա մյուս երեխաների հետ խաղա, իսկ ես՝ վարդը ձեռքիս՝ մտա իմ աշխատասենյակը, որպեսզի գարունն այնտեղ էլ մուտք գործի:

Հաջորդ օրը վաղ արթնացա: Հագնվեցի, խմեցի գոմեշի կաթը և ճանապարհ ընկա դպրոց: Նախ գնացի գյուղի մանրախանութը, որը փակ էր: Շատ տխրեցի: Ուզում էի Սոֆուլայի համար շոկոլադի սալիկ գնել: Հասա դպրոց, բայց, փոխանակ աշխատասենյակս գնալու, կանգնեցի դպրոցի բակում, երեխաների և ծաղիկների մեջ, կարծես ամենափոքր երեխան ես լինեի...

Իմ գլխավերևում ակացիաներն իրենց ճերմակ ժպիտն էին սփռել աշխարհին: Ծանոթ բուրմունքն արթնացնում էր իմ մեջ երիտասարդության և կյանքի ողջ վեհությունը:

Սպասում էի... Երեխաներն իրար ետևից գալիս էին ու գալիս: Նրանց շարքերն աստիճանաբար ստվարանում էին: Դասի սկիզբն ազդարարող զանգը հնչեց, իսկ Սոֆուլան չէր երևում: Սեղանիս վրա վարդերի չորս ծաղկեփունջ կար: Սկզբում համբուրեցի ծաղիկները, վայելեցի նրանց բույրը, շնորհակալություն հայտնեցի, հետո հարցրի.

— Ո՞վ է բերել այս ծաղիկները:

— Մենք, մենք, պարոն,— պատասխանեցին երկու երեխա վերջին նստարանից:

— Ձեզ ո՞վ ասաց, որ ինձ ծաղիկներ բերեք,— նորից հարցրի ես:

Երեխաներն իրար նայեցին, հետո ասացին.

— Պարոն, երեկ Սոֆուլան ձեզ մի վարդ չնվիրե՞ց:

— Այո,— հաստատեցի ես չոր տոնով:

— Մենք, պարոն, գլխի ընկանք,— պատասխանեցին նրանք միաձայն,— որ ծաղիկներ շատ եք սիրում, դրա համար էլ այս ծաղիկները բերեցինք, որ դասարանը զարդարենք:

— Շատ լավ, ապրեք, երեխաներ,— ասացի ես ուրախացած:

Մի աղջնակ՝ Յաննան, վախվորած բարձրացրեց իր գունատ ձեռքը և ձայն խնդրեց:

— Պարո՛ն, պարո՛ն...

— Ասա, ի՞նչ ես ուզում, աղջիկս:

— Սոֆուլան այսօր դպրոց չեկավ: Երեկ նրա տրամադրությունը շատ բարձր էր և անընդհատ կրկնում էր, որ դուք իր հորեղբայրն եք: Ճի՞շտ է:

Ապշեցի, շշմեցի: Ի՞նչ պատասխանեի: Ի՞նչն էր դրդում Սոֆուլային, երբ դեռ կարգին չէինք ծանոթացել, երբ դեռ չէր հասցրել գնահատել ինձ իր անսխալ մանկական չափանիշով, որպեսզի իր հորեղբայրը ներկայացնի: Ի՞նչն էր մղում այդ ազնիվ սրտին ինձ պարգևելու մի պատիվ, որին արժանի չէի:

— Սոֆուլան ուրիշ հորեղբայր չունի՞, որտե՞ղ է հայրը:
— Նրա հայրը,— պատասխանեց Նոնդասը՝ դասարանի ամենահամարձակ աշակերտը,— Արևմտյան Գերմանիայում որպես բանվոր է աշխատում: Սոֆուլան հորեղբայր չունի:
— Անշուշտ, անշուշտ, ես նրա հորեղբայրն եմ, քանի որ հարազատներ չունի:
— Ունի, ունի,— ասաց Յաննան:— Նա տատիկ ունի և մի քույրիկ՝ երեք տարեկան Կիկին: Նրա տատիկը շատ ծեր է և խնամում է Կիկիին: Նրանց տունը քաղաքի ծայրամասում է:
— Որտե՞ղ է Սոֆուլան, այսօր ես նրան չեմ տեսել:
— Այսօր, պարոն ուսուցիչ, տատիկը Սոֆուլայի շորերն է լվանում, իսկ ինքը խնամում է քույրիկին: Ես էլ եմ նույնն անում:
— Ինչո՞ւ, քո ծնողնե՞րն էլ տանը չեն:
— Այո, նրանք էլ Բելգիայում որպես բանվոր են աշխատում:
Նա չէր վերջացրել իր նախադասությունը, երբ շատ երեխաներ թռան իրենց տեղերից և բացականչեցին.
— Իմ ծնողներն էլ տանը չեն, իմ ծնողներն էլ...
Սկսեցի հաշվել: Դասարանի վաթսունութ երեխաներից երեսունը «որբացել» էին...
Ուրեմն, երեսուն աշակերտների ծնողներ մի կտոր հացի համար թողել գնացել էին արևմուտքի ստրուկների շուկաներում աշխատելու՝ զրկելով իրենց ու իրենց երեխաներին մարդկային գերագույն երջանկությունից: Իսկ այս երեխանե՞րը: Ո՞վ պետք է նրանց տիրություն աներ, ո՞վ պիտի նրանց պաշտպանը կանգներ: Ո՞վ պիտի ցրեր նրանց հոգու թախիծը և ջերմացներ նրանց քնքուշ սրտերը:
Մի կողմից դառնություն և վիշտ, մյուս կողմից՝ գութ և կարեկցանք համակեց ինձ այդ երեխաների նկատմամբ: Բայց ուզեցի շարունակել պրպտումներս, իմանալու՝ այդ երեխաները արդյո՞ք հասկանում, գիտակցո՞ւմ են իրենց ծնողների՝ արևմուտքի ստրուկների շուկաներ գնալու պատճառները:
— Ասա ինձ, Նոնդաս, ինչո՞ւ ծնողներդ Արևմտյան Գերմանիա գնացին:
— Ուզում ենք մի փոքրիկ տուն կառուցել, պարոն: Վերջերս Նիցա մորաքույրս ամուսնացավ, փեսային տուն բերեցինք, իսկ մենք մառանում ենք քնում:
— Իսկ քո ծնողնե՞րը, Սուզի:
— Գնացին, որպեսզի ինձ համար ձըմեռային մի զույգ կոշիկ բերեն:
— Իսկ քո ծնողնե՞րը, Մարիա:
— Որպեսզի մի տրակտոր գնենք. հողատերը խլել է մեր կովը:
Այսպես, ուրեմն, նույն պատճառն էր դրդել բոլոր այդ ծնողներին թողնելու ամեն ինչ՝ տուն, երկիր, երեխաներ: Այսպիսով, Սոֆուլան, Մարիան, Նիկին, ժամանակից շուտ դայակներ էին դարձել, երբ նրանք դեռ չէին հագեցել խաղի հրճվանքից:
Հաջորդ օրն ուրբաթ էր: Շրջանի բոլոր գյուղերից սայլակառքեր էին շարժվում դեպի շրջկենտրոնի շուկա, որը գյուղացիների համար ավելի շուտ հանդիպման, ժամանցի վայր էր:
Սայլակառքերը՝ մեջները չոր խոտ, հավեր և թռչից ու կտորից պատրաստած գլխարկներով մարդիկ՝ դանդաղ առաջ էին շարժվում: Այդ օրը գյուղերն ու դըպրոցները դատարկվում էին: Նույնը՝ և մեր դպրոցում: Խիստ պակասել էին երեխաները: Նրանց մեջ էր Սոֆուլան՝ թաքնըված ոչխարների փարախի ետևը: Նըկատեցի և արագ քայլերով մոտեցա Սոֆուլային, որի ձեռքին մի վարդ կար:
— Ինչո՞ւ ես թաքնվում:
— Ներեցեք, պարոն, երեկվա իմ բացակայության համար,— ասաց նա մեղմ, բեկբեկուն ձայնով, կարծես մեղք էր խոստովանում:— Փոքրիկին էի խնամում, որովհետև տատիկը...
— Գիտեմ, գիտեմ,— հանգստացրի նըրան,— իսկ հիմա ինչո՞ւ ես թաքնվում:
— Ուր որ է տատիկս կհայտնվի և ինձ կտանի, որ Կիկիին խնամեմ, որովհետև ինքը շուկա է գնալու, իսկ ես չեմ ուզում: Ուզում եմ դպրոց գալ, ուզում եմ ձեզ մոտ լինել: Չէ՞ որ դուք իմ հորեղբայրն եք:
— Իհարկե, իհարկե, ես քեզ սիրում եմ հորդ չափ:
— Օ՜հ, նա ինձ չի սիրում, եթե ինձ սիրեր, մորս հետ Գերմանիա չէր գնա...
— Նա գնացել է, որ քեզ համար ամառը շատ նվերներ բերի: Մի անհանգըստանա, ամառը հայրդ անպայման կգա: Ես հենց այսօր նամակ կգրեմ նըրան:
— Կգա՞, դուք ծաղրում եք ինձ, պարոն, տատիկն էլ է այդպես ասում: Բայց

մի քանի օր առաջ հայրս զանգահարեց և հայտնեց, որ գալու է հաջորդ տարի: Նա դեռ բավականաչափ փող չի հավաքել, և գալու դեպքում նրան աշխատանքից կհեռացնեն...

Զանգը հնչեց: Սակավաթիվ երեխաներ հավաքվեցին, դասարան մտանք, լուռ խաչակնքեցինք, նաև աստծուն շնորհակալություն հայտնեցինք մեր ունեցածի համար:

Կողքիս կանգնած Սոֆուլայի ձեռքին էր վարդը, որը ծարավից թեքել էր գլուխը: Նստեցինք և սկսեցինք կրկնել լեզվական վարժությունները: Հանկարծ դասարանի դուռը ծեծեցին:

— Մտեք,— ասացի ես:

Սակայն թակոցները շարունակվում էին: Վեր կացա տեղիցս և գնացի դեպի դուռը: Բացեցի: Դռան մեջտեղում հայտնըվեց մի կարճահասակ, նիհար, սևազգեստ ծեր կին՝ երեք տարեկան մի աղջնակի ձեռքը բռնած:

— Սոֆուլան այստե՞ղ է, պարոն:

— Այո, դուք նրա տատի՞կն եք:

— Այո, այս փոքրիկին եմ բերել, պարոն ուսուցիչ, որ ձեր մոտ մնա, որովհետև ուզում եմ շուկա գնալ, Սոֆուլան դուրս է եկել տնից, երբ դեռ մութ էր, որպեսզի փոքրիկին չխնամի և դպրոցից չբացակայի:

Նա մի պահ լռեց, խոր հոգոց հանեց, հետո շարունակեց.

— Դուք լավ եք հասկանում երեխաների հոգեբանությունը: Ուզում եմ հանգիստ լինել: Շուկա եմ գնում երկու հավ վաճառելու և երեխաների համար անհրաժեշտ գնումներ կատարելու: Շատ հանգիստ երեխա է, կնստի Սոֆուլայի կողքին, ձեզ ոչ մի նեղություն չի տա:

Նա մեղմորեն հրեց փոքրիկին դեպի Սոֆուլայի նստարանը:

— Լավ, լավ, թողեք նրան,— ասացի ես:

Ծեր կինը գլուխ տվեց և հեռացավ:

Հանկարծ նա հևասպառ վերադարձավ, մոտեցավ ինձ, գրպանից հանեց մի փաթեթ և դրեց ափիս մեջ:

— Երեխայի ձուն է, պարոն ուսուցիչ, քիչ էր մնում մոռանայի: Փոքրիկը ձուն ուտում է ուղիղ ժամը տասներկուսին: Խնդրում եմ չմոռանալ, և թող աստված ձեզ և ձեր ծնողներին առողջություն ու երկար կյանք տա...

**Հունարենից թարգմանեց**
**ՍԱՐԳԻՍ ՋԵՐՋԵՐՅԱՆԸ**

**ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ**

# Մայր փեթակը

**Մայրս՝ փեթակ, իսկ ես՝ մեղու,**
**Տաք, շողշողուն երգի շիթ...**
**Վառ թռչում եմ դալար դաշտեր,**
**Ծողվում նեկտար հակինթ–հակինթ:**

**Հավաքում եմ արոտներից**
**Գույներ, բույրեր երազի...**
**Մայր–փեթակ եմ թռչում նորից**
**Իմ թևերին՝ լույս փոշի:**

**Իմ բերածը կաթ է դեռ հում,**
**Դեռ խմոր է աստղային,**
**Մայր–փեթակն է նրան մերում,**
**Ներշնչանքով երկնային:**

**Հունցում է նա ծորուն ոսկի,**
**Ստեղծում է կենաց հաց—**
**... Ես մեղրն եմ քո փեթակի՝**
**Անուշ մայրիկ, դուռը բաց:**

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



ՇՈՒՇԱՆԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ

# Ծաղիկը բացվում է գիրոջ համար



Աշոցք աշխարհի մշտական ծանր ձըմեռներին բուքը դաժան ու աղետալի ճամփա է բացում դեպի գյուղեր. սանըրում, սարերից, բլուրների վրա տարածված տների կտուրներից ձյուն ու սառույց է թափում ցած, փակում ամեն ինչ խուլ ու անխորտակ: Ղուկասյանի ձմեռը խորըն է ու երկարատև: Երբ ձյունը բարձրացնում, դաշտուղուրան հավասարեցնում է բլուրներին, իսկ գիշերվա սառնամանիքը մտրակի պես շաչում, կարծրացնում է ձյան կեղևը, այնպես, որ քայլելիս ոտքդ չի խրվում, միևնույն է՝ աշխարհն էլի նույն աշխարհն է, և բացվող ամեն օրվա հետ առավոտ կանուխ թաղի էն ծայրից լուր կառնեն, թե այսինչ մեկը բքի բերանն ընկել-մոլորվել է, տղերքը գնացել, ողջ գիշեր փնտրել են ու մինչև հիմի չկան: Լուրն, ինչպես առօրյա խոսք, ասվում, մի թաղ այն կողմ մարում, վերջանում է: Այստեղ ամեն մարդ ունի բքի իր պատմությունն ու պատմելու իր եղանակը, և դեպքը այնքանով իմաստ կունենա, որ հերթական մեկը, դրան առաջ ճամփա բացելիս թին կխրի պատի բոյին կանգնած ձյան փըրփուրի մեջ, կվառի հանգած ծխախոտը ու ետ հրելով մաշված գլխարկը, այդ լուրը որպես մեծ պատմություն նորից կըպատմի:

Կպատմեն ավագները, կյանք ապրած մարդիկ, պատմելով՝ թոնրատան կտրից թաց խոտի մի խուրձ կգցեն հայելու նըրման սառած գետնին, գուտի սառույցը կըկոտրեն և, անասունը գոմից դուրս հանելիս, երեխեքին կքշեն դասի. վերարկու, գլխարկն ի՞նչ է, ձեր ժամանակ մի տակ շապիկով, էն ճքճքան ցրտին տավար-ոչխարի էինք պահում: Թե չէ շատ նազուկ մեծացաք, դե հայդա... Երեխեն ամեն բարի լույսի հետ կարթնանա այս պատմությունների մեջ, թաքուն կսպասի իր օրվան և բքի մեջ մոլորվելու կանխակալ ահ չի ունենա:

Սա Աշոցքի սովորական ձմեռն է:

Առհասարակ այստեղ ապրում են տարվա երկու եղանակ՝ ամառ և ձմեռ: Գարունը ընդամենը մի քանի օր է տևում (գարնան մեծ մասը ևս ձմեռ է), և այդ մի քանի օր տևող գարնանը, երբ դաշտ

ու արտի ցանցատ կանաչի հետ ձորերը լցվում են եղինջով, անուշիկով ու կաթբանջարով, և համատարած բացվում են բոլոր արահետները, դպրոցից տուն դու գնում ես քո ճանապարհով և գիտես, որ ահա, քո նշան ցից քարի տակ, միայն քեզ հայտնի տեղում, մանուշակի մի քոլ կամ աղբրանց արուն միայնակ ծաղիկն է բացվում, դեպի վեր, դաշտի թեք լանջին համբարձման ծաղիկն է խոնարհ դեղնում, գյուղի տակ, քարափների արանքից առվակը զրնգուն կանաչ արահետ բացել գալիս է, և այդ ամենը քոնն է: Այդ արահետը քոնն է, քանի որ ամեն գարուն մանուշակն ու հարսնածաղիկը քեզ համար են բացվում, և իրենք գիտեն քո մասին, առվակը քեզ համար է զրնգում, և ինքը գիտի քո մասին:

Ղուկասյանի ամենաընդարձակ գյուղերը՝ Բավրա, Մուսայելյան, Ցողամարգ, Սարապատ 120 տնտեսությունից գուցե թե քիչ ավելի լինեն: Իսկ փոքր գյուղեր... Գյուղերի փոքրությամբ Ղուկասյանը երևի մրցակից չունենա: Տարիների սիստեմատիկ միգրացիան հյուծել, մաշել է երբեմնի շեն ու բազմամարդ բնակավայրերը, և հիմա թափուր տներ գյուղերում ինչքան ասես. թե ուզում ես՝ գնա ու ապրիր: Ջորեր տանող ճանապարհի առաջին գյուղը Սալուտն է, ունի 12 տնտեսություն, Լեռնագյուղը՝ 3, իսկ Գետիկը վաղուց արդեն չկա, չի շնչում այլևս: Ջորի գլխին, բարձր բլուրի վրա երևացողը ավերակ եկեղեցին է, լքված գերեզմանոցը, իսկ ավելի վեր՝ վայրի աղավնիներն են. ասում են այդ աղավնիները մեռած գետիկցիների ոգիներն են, որ որբ ու անտերունչ թափառում ու մինչև օրս փնտրում են կորած գետիկցիներին...

Ասացին, որ Լեռնագյուղում ապրում են երեք ընտանիք, որոնցից միայն մեկում կա երկու երեխա: Գյուղում դպրոց չկա: Երեխաները Ցողամարգում են սովորում, ավտոբուսը ամեն օր գալիս, տանում է: Գյուղն ունի, սակայն, իր ակումբը: Ակումբի վարիչը՝ միայնակ մի կին, ամեն առավոտ սովորականի նման գնում է «աշխատանքի», սրբում, մաքրում է առանց այն էլ մաքուր հատակը ու երեկոյան նոր միայն փակում, «վերադառնում» է տուն:

Չէ, սա դոնկիխոտություն չէ, ոչ էլ հանուն գաղափարի ինքնազոհություն: Մայրաքաղաքային բարեկեցության ալարկոտ թմբիրի միջից այդ մարդկանց կյանքը կթվա ռոբինզոնյան մոտիվներով հնարած սրճարանային հերթապահ խոսակցություն: Մինչդեռ նրանք փառաբանության կարիք չունեն և հերոսանալու՝ նույնպես: Ով գիտե, գուցե մի օր իրենք էլ չդիմանան ու քոչեն, բայց առայժմ այդ մարդիկ ապրում են իրենց բաժին սովորական կյանքը, որ ամենօրյա կռիվ է ձյան ու կարկուտի, քար ու անասունի, վերջապես ինքն իր հետ, և այդ դժվար սերը հողի, հայրենի տան, իրենց հիշատակների հանդեպ մի օրվա կյանք չէ, որ ապրես՝ վերջանա: Լեռնագյուղցին սիրում է իր հողը և այդ սերն ապացուցում է իր ամենօրյա կյանքով:

Մեր նախնիները գյուղ կամ բնակավայր հիմնադրելիս, առաջին հերթին եկեղեցին են կառուցել, ոչ այնքան հավատացյալի իրենց առաջին ու կարևոր պարտքը կատարելու համար, այլ՝ գրատուն, դպրոց բացելու, երեխաներին կրթելու: Փորձված բան է. որ գյուղը որ եկեղեցի է ունեցել, չի ավերվել, եթե օտարները չեն կործանել: Ասում են՝ Գետիկը դատարկվեց, որովհետև, դպրոցը փակեցին: Ղուկասյանում հիմա շատ բան առաջվանը չէ:

Գյուղերում այժմ հրաշալի դպրոցներ են կառուցվել. շրջանի ժողովրդական կրթության բաժնի վարիչ Աշոտ Գրիգորյանի կարծիքով կարևորը դպրոցի շենք ունենալն է, աշակերտներ միշտ էլ կգտնվեն: 1990 թվականից Ղուկասյանում սպասվում է բնակչության շեշտակի աճ, և այդ ժամանակ անհավատալիորեն խաղաղ այս դասասենյակները կլցվեն մանկական զրնգուն աղմուկ-ծիծաղով:

Նկատելի է սակայն մի ուրիշ բան, դպրոցական շենքի տիպային այս նախագիծը, որով ընդունված է կառուցել, լեռնային գյուղերի համար այնքան էլ ճիշտ չէ, քանի որ ուսումնական տարվա մեծ մասը ձմեռ է, իսկ շենքերը, որքան էլ ջանաս, հնարավոր չէ լավ տաքացնել:

Թավշուտի ութամյա դպրոցը կառուցվել է հինգ տարի առաջ, գյուղի վերևում, բլրի թեք լանջին. կահավորված, ընդարձակ դասասենյակներով ու մարզադահլիճով: Դպրոցը, սակայն, անասնագոմերին շատ է մոտիկ և գոնե ցանկապատով չի առանձնացված: Մայիսյան հորդ անձրևներից հողը ուռել, խխմել էր, և լանջն ի վար, դեպի դպրոց աղբաջրի մանր, բարակ առուներ էին հոսում: Հանկարծ դրսի թանձր ցեխին, դպրոցը միշտ մա-

քուր կարելի է տեսնել. երեխաների ներս մտնելիս հանդերձարանում փոխում են կոշիկները, այլ կերպ հնարավոր էլ չէ: Գյուղն այժմ ունի 60 տնտեսություն. տարիներ առաջ այստեղից էլ մեծ հոսք է եղել, հիմա դադարել է, բայց, միևնույն է, նախկին քոչի համապատարածր իր սև գործն արել է. դպրոցում սովորում են ընդամենը 46 աշակերտ, այս տարի առաջին դասարան չի բացվել, երեխա չկա:

— Դժվարը այս երկու-երեք տարին է,— մեր մեջ խմորվող տխուր հարցին պատասխանում է դպրոցի երիտասարդ տնօրեն, գրականության ինստիտուտի ասպիրանտ Լևոն Սարգսյանը,— 90 թվականին առաջին դասարան կունենանք՝ 11 տղաներով, այնպես որ, հուսահատվել պետք չէ,— ապա մտահոգ ավելացնում է,— մեր աշակերտ ժամանակ 130 երեխա կար, հիմա միջնակարգն էլ այդքան չունի:

Թավշուտ գյուղը շրջանում հայտնի է իր անզուգական երգիչներով, հարսանիքըն առանց նրանց ինչ հարսանիք: Եվ նրանց որդիներն էլ այնպես ջինջ ու զուլալ էին երգում մեր հնագույն երգերը, որ մայիսյան ամպամած օրը անընկատելիորեն լուսավորվել, երգի պայծառ տրամադրությունը փոխանցել էր մեզ, և ցուրտ, մռայլ դասասենյակը Անահիտի, Հակոբի մյուսների երգից հետո տաք ու մարդամոտ էր թվում: Հետո բարբառագիտության թեքումով դասարանի պարապմունքն էր. Լևոն Սարգսյանը բառակապակցություններ, ասույթներ, դարձվածքներ էր ասում գրական հայերենով, Սաթենիկը, մյուսները նույնը կրկնում էին Մուշի, Ալաշկերտի բարբառներով, պատմում էին հեքիաթներ, և նրանց շուրթերից մեր հընամյա լեզուն հնչում էր անկաշկանդ, ներքին ու ջահել: Չէ, Թավշուտի դպրոցում չես ձանձրանա, և միջանցքների ժամանակավոր լռությունը դեռ ոչինչ չի նշանակում: Նախ՝ դաս ամեն օր պետք է սովորել, հերթ պահել չկա. 5—6 աշակերտով ինչ հերթ պահես: Դասը վերջացավ՝ գնդակ չկա, որ ֆուտբոլ խաղաս, պետք է վազես դաշտ կամ ֆերմա: Վոլոդը, Արան, Միհրը կամ Ռաֆիկը այնքան վստահ են տրակտոր ու կոմբայն քշում, որ խոպան գնացողների տեղը հանգիստ կաշխատեն: Աղջիկների համար էլ դաշտերում ու ֆերմաներում աշխատանք կա, իսկ որ դա էլ չեղավ, տան անասունը կկթեն, կեր կտան, մինչև մեծերը գործից գան: Դպրոցը գյուղատնտեսական թեքում ունի, միայն թե, ափսոս, հողամասը գյուղից շատ է հեռու, չարչարված ու քարքարոտ մի տեղ, ուր հասնելն իսկ հոգնեցնում է: Թավշուտի դպրոցում կարծես թե ամեն ինչ լավ է, չհաշված որ ահա չորս տարի է՝ պատմության և աշխարհագրության մասնագետներ չկան, և այդ դասերը պարապում են հայոց լեզվի և գրականության ուսուցիչները:

— Պայմաններ չկան, ո՞վ կգա: Բացի ֆիզիկայի ուսուցչից մնացածները տեղացի կադրեր են: Չեն գա, որովհետև քանի տարի է խոստանում են գյուղը շրջկենտրոնին կապող մի ավտոբուս ու չեն տալիս: Էհ, եկողը, շաբաթը մի անգամ կուզենա գնել ծնողներին տեսության գնալ: Ինչո՞վ գնա, ութ կիլոմետր մինչև շրջկենտրոն ոտքո՞վ, գայլերի բաժի՞ն դառնա: Ավտոբուս որ տան, ախր, երեխաներն էլ կշահեն: Ղուկասյանում սպորտային խմբակներ, երաժշտական դպրոց կա, կհաճախեն, շնորհքով երեխաներ շատ ունենք: Մենակ մենք չենք, մայրուղուց դուրս գտնվող բոլոր գյուղերը նույն վիճակում են. Թորոս, Կրասալ, Սիզավետ, Կարմրավան... Արժե՞ շարունակել, թվել մեկ-մեկ:

Լևոն Սարգսյանի մտահոգությունը ճըշմարիտ է, բայց մի՞թե պատճառաբանելու, քննելու, արդար-մեղավոր փնտրելու համար չորս տարի է պետք եղել (և էլի անհայտ է՝ ինչքան), և ի՞նչ մեղք ունեն երեխաները, որոնց մտապատկերի մեջ այդ առարկաները մինչև վերջ կմնան միջանկյալ, երրորդական ու աննկարևոր, մինչդեռ անառարկելի է, որ պատմությունն ու աշխարհագրությունը մի քիչ ավելի նշանակություն ունեն, քան սովոր առարկա լինելը: Դրանք այբուբենի չափ կարևոր են երեխայի կյանքում, քանի որ առաջին առնչությունն են նաև հայրենի լեռնաշխարհի, սեփական մշակույթի ու կենսագրության հետ, առանց որի, չվախենանք ասել, անիմաստ, թերի, պակասավոր է երեխայի կրթությունը, առավել ևս՝ հետագա դաստիարակությունը: Այսօրինակ ցավալի փաստի կարելի է հանդիպել նաև մյուս գյուղերում:

Զույգաղբյուրը առաջին պահին քաղաք է թվում: Այդ պատրանքը ստեղծում են շրջկենտրոնի հարևանությամբ միատիպ կառուցված պետական երկհարկանի շենքերը: Գյուղի նախկին տարածքը, պարզ-





Ցողամարգի դպրոցի տնօրեն Մյասնիկ Հակոբյանը



Օտար լեզվի դաս է Ցողամարգի դպրոցի 8-րդ դասարանում

վում է, ջրառատ է եղել, Լենինական խմելու ջուր առաքելու նպատակով գյուղացիներին վերաբնակեցրել են ու հիմա սա Նոր Ջույգաղբյուրն է: Մեծ ու բազմամարդ գյուղ է թվում, ինչպես ասացինք, բայց՝ նորակառույց, դեռ թարմ ներկի հոտ բուրող դպրոցում սովորում էին ընդամենը 49 աշակերտ՝ կոմպլեքս դասարաններով: Ազատ դասասենյակները տրամադրված էին Կարմրավանի 15 աշակերտներին. տեղի խարխուլ դպրոցը վերակառուցվում էր, և այստեղ ժամանակավոր ապաստան էին տվել նրանց: Եվ ահա, բախում ենք կարմրավանցիների դասասենյակներից մեկի դուռը: Մաթեմատիկայի դաս է կոմպլեքս դասարանում. մի շարքում նստած են երրորդցիները, որոնց ստուգողական աշխատանք էր հանձնարարված, մյուսում՝ չորրորդ դասարանցիները, երկուսը միասին... 7 աշակերտ: Սիմոնը, Փիրուզան, Զեմֆիրան, Արշակը անընդհատ դասի պրոցեսում են. օտար ներկայությունից շփոթվելով բացատրում են, լուծում խնդիրները, իսկ ջահել ուսուցչուհին՝ Անահիտ Մաթևոսյանը, անտեսելով դասասենյակի ցուրտն ու պատուհանից լցվող գարնան կապարահամ, թաց ու մաշող լույսը, հետևում է նաև աշակերտների բանավոր խոսքի ճշգրտությանն ու կապակցվածությանը, մաթեմատիկական տերմինների հայերեն ձևերի օգտագործմանը: «Մաթեմատիկայի ժամին հայերեն դաս»,— մտածում եմ ես:

—Չե՞ն խանգարում իրար,—հարցնում եմ կիսաձայն:

— Չէ,— տխուր ժպտում է ուսուցչուհին,— սովորել են: Միշտ մի դասարանին ինքնուրույն աշխատանք եմ տալիս, մինչև մյուսին հարցնեմ, ստուգեմ, բացատրեմ նոր դասը: Ինձ համար է դժվար: Պատահում է, չեմ հասցնում նոր դասը խորությամբ բացատրել, ժամանակ չի մնում: Երկու դասարանի հետ միաժամանակ պարապելը դժվար է, բայց հաջորդ օրը դաս հարցնելիս աշխատում եմ ան-

պայման լրացնել բաց թողածը: Ախր, որ քիչ են, մի տեսակ կարծես իմ սեփական երեխաները լինեն, մի ընտանիքի նման ենք, նույն հոգսով, նույն ուրախությամբ: Ոնց որ հարազատներ: Ի՞նչ ասեմ...

Ոչինչ էլ պետք չէ, սիրելի ընկեր Մաթևոսյան: Ձեր չասված բառերը ձեր հայացքի, ձեր շարժուձևի ու վարքի մեջ էր, աշակերտների հանդեպ ձեր մայրական բարեպաշտության ու ձեր սաների գերազանց պատասխանների մեջ, և ինչ հրաշալի է, որ աշխարհում ձեզ նման մարդիկ կան:

Ծանր սրտով դուրս եկանք դպրոցից, տանելով մեզ հետ ջահել ուսուցչուհու կտրված ժպիտն ու նրա 15 աշակերտների՝ օտար ներկայության դեմ երկնչող դեմքերը և ավելի ուշ, որքան էլ ջանում էինք մխիթարվել, տեսնելով Մուսայելյանի դպրոցի ուրախ դասասենյակներն ու աղմկոտ միջանցքները, միևնույն է, Կարմրավանի տեղատվության մաշող պատկերը չէր լքում մեզ:

Տխուր էր վիճակը Արփենիի դպրոցում, այս անգամ արդեն երեխաների սակավությունը չէր պատճառը, այլ փնթիության, թափթփվածության, անճաշակության համատարածը՝ շեմքից մինչև դասասենյակները, և առաջին ցանկությունը, որ ունենում էիր, շուտ դուրս գալն էր, թվում էր օդի փոխարեն պատի թերթերի անժամկետ փոշին ես շնչում:

Արփենի տանող ճանապարհի ձախ բարձունքի վրա նարնջագույն ու սև տուֆի համադրությամբ կառուցված անհայտ զինվորի հուշարձանը հեռվից գողտրիկ եկեղեցի է թվում: Հետաքրքրվում եմ՝ ով է ճարտարապետը:

— Չգիտեմ, բայց հուշարձանի զանգակատունը կիսատ թողել, գնացել էին: Մյասնիկը էն ժամանակ մեր դպրոցի ուսմասվարն էր, ձեռից հազար շնորհք է գալիս, ինքը մենակ շարեց, դուրս եկավ: Իսկի կասե՞ս, որ վարպետի գործ չի, հեչ չի տարբերվում շարածից: Ափսոս, Յողամարգ գնաց, տեսնես էնտեղ ի՞նչ դըպրոց է սարքել,— բացատրում է մի տարեց մարդ՝ հուշարձանը չորացած ծաղիկներից մաքրելով,— բացմանը տեսնեիք ինչքան մարդ կար էստեղ:

Հենց սկզբից ասենք, որ Յողամարգի միջնակարգ դպրոցը կարող է մրցել մայրաքաղաքի լավագույն դպրոցների հետ: Կառուցվել է երեք տարի առաջ, ութնամյակի նախագծով, սակայն աշակերտների թիվը սպասվածից ավելի է եղել (այստեղ դասի են գալիս Լեռնագյուղից, Գոգհովտից, Թորոս և Արփենի գյուղերից), և տասնամյակ բացելու հնարավորություն է ստեղծվել:

Ներսում ամեն ինչ՝ միջանցքների պատերին կախված ցուցափեղկերը, առարկայական ու թեմատիկ պատի թերթերը, տարբեր բովանդակության վահանակները բարձր ճաշակ, լույս ու մաքրություն են հորդում, և ներս մտնելիս աննկատելիորեն զվարթանում ես, ու թեթևություն է իջնում վրադ: Ծաղիկներն այնքան շատ են և բազմատեսակ. ընտրված ու ներդաշնակ իրենց տեղին, որ ակամայից մտածում եմ՝ Մյասնիկ Հակոբյանը անպայման նկարիչ կամ բանաստեղծ է, այլ կերպ ինչպե՞ս բացատրել գույնի ու չափի այսօրինակ նուրբ զգացողությունը:

— Որտեղի՞ց իմացաք,— ժպտում է տնօրենը,— պրոֆեսիոնալ չեմ, բայց երկուսից էլ քիչ ու միչ գլուխ հանում եմ:

— Դպրոց մտնողը չի կարող չգուշակել այդ:

— Ուսուցիչները մեծ մասամբ երիտասարդ, գործը սիրող մարդիկ են և իրենց կաբինետները իրենք են սարքել, կարգի բերել աշակերտների հետ: Այնպես որ, մենակ իմ շնորհքը չի...

Դպրոցը հագեցած է տեխնիկայի վերջին նորույթներով:

Ռուսաց և օտար լեզվի կաբինետներում տեղադրված են լինգաֆոնային ապարատներ, որոնք մատչելի են դարձնում դասը: Ավտոկաբինետում, ֆիզիկայի և մաթեմատիկայի լաբորատորիաներում գործում են գիտելիքների ստուգման սարքեր, որոնք նպաստում են նյութի ճիշտ մատուցմանը, անհատական աշխատանքի մեծ հնարավորություն են տալիս:

Մյասնիկ Հակոբյանի դպրոցը գյուղի երիտասարդության երեկոյան հավաքատեղին է. ընդարձակ, բոլոր հարմարություններով մարզադահլիճը հնարավորություն է տալիս հարևան գյուղերի ջահելներին զբաղվել վոլեյբոլով, ծանրամարտով, թեթև ատլետիկայով: Իսկ տըղաներն էլ պարտքի տակ չեն մնացել: Հավաքվել, միացյալ ուժերով մաքրել են դպրոցի շրջակայքը, ամառային մարզադաշտ սարքել, դեպի դպրոց տանող ճանապարհին բարդիներ են տնկել, առաջիկայում կգործեն ցայտաղբյուրները, և այդ վայրը դառնալու է հանգստի գոտի:

— 5—6 տարի առաջ գյուղը քիչ մնաց դատարկվեր, ահ չկար: Հիմա լավ է, դադարեց հոսքը, պատճառներից մեկն այն է, որ գյուղում գործարանի մասնաճյուղ բացվեց, աշխատանքի հնարավորություն կա, բնակելի շենքեր կառուցվեցին: Ցերեկը աշխատում են, երեկոյան՝ խնդրեմ, ինչքան ուզում են, թող գան, զբաղվեն: Հարևան գյուղերից էլ լավ մարզիկներ ունենք ու շատ գոհ ենք:

Լռակյաց, ինքն իր մեջ ամփոփվող մարդ է Մյասնիկ Հակոբյանը, ազատ ժամերին սիրում է թափառել սարերում, ամուսնը հունձ է անում աշակերտների հետ: Բախտն այնքան էլ շռայլ չի եղել նրա հանդեպ, և այսպես լռությամբ էլ ապրում է իր կյանքը, իր հոգսը ոչ մի օր չպարտադրելով ուրիշներին, ընդհակառակը՝ սատար լինելով ամեն մեկի լավին ու տխրությանը: Եվ ես մտածում եմ՝ հոգու ինչ ուժ, այսպես լռությամբ ներգործելու ինչ հիմք է պետք՝ նվաճելու այն խորագույն հարգանքն ու հավատը, որ կա նրա հանդեպ:

Հեռուստատեսային մի հաղորդման ժամանակ մայրաքաղաքի դպրոցներից մի պիոներ ոգևորությամբ պատմում էր մի հեռավոր քաղաքի մասին, որի պիոներների հետ ահա քանի տարի նամակագրական կապ ունեն և այդ կապի շնորհիվ հրաշալի գիտեն այդ քաղաքի մարդկանց ու նրանց կյանքը: Ես համարձակություն ունեցա ընդհատել նրան ու հարցնել, թե նույն նախանձախնդրությամբ իրենք գիտե՞ն մեր հանրապետության հեռավոր շրջանները, օրինակ՝ Ղուկասյանը:

— Ղուկասյա՞ն,— երեխան լարվեց, փորձեց մտաբերել, ապա հուսահատված նայեց կադրից դուրս՝ ուսուցչուհուն ու,— չգիտեմ,— ասաց,— չենք լսել,— և անմիջապես էլ մտնելով իր դերի մեջ շարունակեց, թե ինչ հաջողությունների են հասել «Ճանաչիր քո հայրենի երկիրը» երթուղով աշխատելիս: Ես լսում էի այդ երեխային, և իմ միտքը համառորեն չէր գնում այդ հեռավոր քաղաքների ետևից. ես մտածում էի աղբրանց արուն միայնակ ծաղկի մասին և այն տղայի մասին, որն ամեն գարուն անպայման գտնում էր ծաղկի արահետը, որովհետև դա իր արահետն էր և ինքն էր տերը, իսկ ծաղիկը ամեն գարուն, այսպես, սպասում էր իր տիրոջը:




Նկարը՝ ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

# Իմաստուն արքայի վճիռը

պայմանական վերնագիր
(հեքիաթ-հանելուկ)

**Ժամանակով մի քաղաքում մի ծեր ու իմաստուն թագավոր է լինում: Նա ցանկանում է, որ իր թագաժառանգը լինի ազնիվ, աշխատասեր ու համբերատար և իր մահից հետո արդարությամբ կառավարի երկիրը:**

**Եվ ահա գարնանային մի օր նա իր մոտ է հրավիրում իր յոթ արու զավակներին:**

**Եվ դուրս է գալիս արքան՝ ձեռքին մի տոպրակ:**

**— Իմ պալատն այսօր ծաղկանոց է դարձել— դիմում է նա որդիներին,— որովհետև այստեղ հավաքվել եք դուք՝ իմ ծաղիկները, մեր ապագայի ծաղիկները: Եվ ինձ համար դժվար է ընտրել այդ ծաղիկներից որևէ մեկին:**

**Հիմա ես ձեզնից ամեն մեկին ծաղկի մի սերմ կտամ: Եվ դուք բոլորդ ամռանը նորից կգաք այստեղ, բերելով ձեզ հետ այդ սերմերից աճեցրած ու խնամած ձեր ծաղիկները: Թագաժառանգ կոռնա նա, ում ծաղիկը կլինի ամենագեղեցիկը:**

**Գալիս է ամառը, պալատը լցվում է ծաղիկների հազարավոր գույներով ու բույրերով: Եվ արքան սկսում է շրջել ու նայել ծաղիկները:**

**Հանկարծ նա նկատում է իր կրտսեր**



որդուն, որ տխուր գրկած իր դատարկ ծաղկամանը՝ կուլ է տալիս արցունքներն ու մյուսների ծաղրը, որոնց ծաղիկները աչք էին շլացնում:

— Ինչո՞ւ է քո ծաղկամանը դատարկ, տղաս,— հարցնում է թագավորը:

— Թագավորն ապրած կենա, ես... ես ջանք չեմ խնայել, բայց ինձ բաժին ընկած սերմից ծաղիկ դուրս չեկավ:

Այնժամ իմաստուն արքան բռնում է տղայի ձեռքն ու, ի զարմանս բոլորի, ասում.

— Լսեցեք բոլորդ, ահա իմ ազնիվ թագաժառանգը: Նրա ծաղկամանում ծաղիկ չկա, բայց հոգում ծաղկում է ամենագեղեցիկ ծաղիկը:

Ուշադի՞ր կարդացիք այս գեղեցիկ հեքիաթը: Հիմա՝

ա) փորձեք տրամաբանորեն հիմնավորել իմաստուն արքայի վճիռը,

բ) ի՞նչ անուն կառաջարկեք ամենագեղեցիկ ծաղկի համար, որը դառնար նաև այս հեքիաթի վերնագիրը:

Առաջարկը՝ ՌՈՒԲԵՆ ՍԻՐՈՒՆՅԱՆԻ

---

## «ՊԻՈՆԵՐ» № 1-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

Կորյուն, Դարյան, Դարբնի, Սիամանթո, Սարյան, Դուրյան, Զարյան, Արազի, Շիրազ, Րաֆֆի, Մուրացան, Մահարի, Մեծարենց, Չարենց, Կարենց, Ծերենց, Դաշտենց, Բակունց, Բես, Սնակ, Զորյան, Պռոշյան, Վարուժան, Նար-Դոս:

---

## «ՊԻՈՆԵՐ» № 2-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

● Ամսվա մեջ կիրակիները իրար հաջորդում են մեկ կենտ, մեկ զույգ ամսաթվով օրերին: Ուրեմն այդ ամիսն ունի 5 կիրակի: Ստացվում է, որ ամիսը զույգ ամսաթվով երեք կիրակի կունենա միայն այն դեպքում, երբ կիրակի լինենե ամսի 2-ը, 9-ը, 16-ը, 23-ը և 30-ը:

Ուրեմն, այդ ամսվա առաջին օրը շաբաթ է:

● Դե, իհարկե, որ այդ օրը ապրիլի 1-ն էր: (Մյուս ամիսների առաջին օրերին մենք այդպես չենք կատակում):

● Ստացվում է կարծես թե պարադոքս, որը նման է դեռևս մ. թ. ա. 4-րդ դարում Էվբուլիդի կողմից առաջադրված ստախոսի պարադոքսին: Մարդն ասում է. «Ես ստում եմ»: Եթե նա իրոք ստում է, ուրեմն, ասում է ճշմարտությունը, իսկ եթե ասում է ճշմարտությունը, ուրեմն, նա ստում է:

Այս պարադոքսը մեծ ազդեցություն էր թողել հին հույների վրա:

Եթե Սոնային հաջողվում է խաբել եղբորը օրվա ընթացքում, ուրեմն՝ նա առավոտյան ճիշտ է ասել, թե խաբելու է: Իսկ եթե օրվա ընթացքում Սոնան չի խաբում, ստացվում է, որ նրա առավոտյան հայտարարությունը սուտ է, և Հակոբիկը խաբվել է՝ հավատալով այդ ստին (ամբողջ օրը նա լարված ու անհանգիստ դրության մեջ էր):



ՌԱՖԱՅԵԼ ԱԹՈՅԱՆ (ծն. 1931 թ.) «ՆԱՏՅՈՒՐՄՈՐՏ» 1983 Թ.

# Ո՛Վ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀ

Խոսքի վերամշակումը՝ Ս. ՏԱՐՈՆՑՈՒ

Դանդաղ
Adagio

S.
A.

Ո՛վ հա-յոց աշ-խարհ. հա-րազատ պայ-ծառ. գա-վակ-նե-րիդ օ - րե-վան. հա-վերժ-ական

T.
B.

Մի փոքր աշխույժ
Un poco animato

a tempo

հան-գըր-վան. քո ըն-պարտ եր - գը. քո ա-զատ կյան - քը քող հըն-չի հա - վետ.

քող ծաղ-կի հա - վետ. ո՛վ հա - յոց մեր աշ-խարհ. դու ցըն-ծա՛ դա - րե - դար:

rit.


Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՑՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.:

ԻՆԴԵՔՍ՝ 77806

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.